ՀԱՅ

# ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

# ՌՈՒՍԻԱՅՈՒՄ



ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ՝

ՎԱՒԵՐԱԹՂԹԵՐՈՎ

Է — ԺԸ ԴԱՐ



ԳՐԵՑ

ՀԱՅԿ ՏԷՐ-ԱՍՏՈՒԱԾԱՏՐԵԱՆՑ



ՊԱՐԻԶ

Բազմալեզուեան Տպարան Երուանդեանի

3, ՍԻՄԱՐ ՓՈՂՈՑ

1906

# ՀԱՅ ԼԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ՌՈՒՍԻԱՅՈՒՄ



ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ

ՎԱՒԵՐԱԹՂԹԵՐՈՎ

Է—ԺԸ ԴԱՐ





ԳՐԵՑ

ՀԱՅԿ ՏԷՐ ԱՍՏՈՒԱԾԱՏՐԵԱՆՑ



ՊԱՐԻՍ

Բազմալեզուեան Տպարան Բասմաջեանի

3, ՍԻՄԱՐ ՓՈՂՈՑ

1906

# ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

## ՌՈՒՍԻԱՅՈՒՄ

### ՄԻ ՔԱՆԻ ԽՕՍՔ

*Այս վերջին մի քանի տարերի պատմութեամբ զբաղուողն անշուշտ նկատել է, որ Հայերը քաղաքական ինքնուրոյնութիւնը կորցնելով հանդերձ դարձեալ պատմական մի ազգ են կազմել եւ թէ՛ եւրոպական եւ թէ՛ ասիական պետութիւններում որոշ, յարգի եւ աչքի ընկնող դեր խաղացել: Հայկական աղբիւրները՝ այս պատմական եւ գործնական կեանքի մասին մեզ շատ քիչ բան են տալիս, բայց կան աղբիւրներ ռուս լեզուով, որոնք շատ հարուստ են եւ թանկագին մեր ազգի նոր պատմութեան համար:*

*Անցեալ դարու սկզբից մինչեւ կէսը, մինչեւ 50-ական թուականները, լոյս տեսան մեր պատմութեան վերաբերեալ բազմաթիւ վաւերագրեր, որոնց հեղինակները ռուս եւ կամ այլ ազգից էին, իսկ միւս կէսում այդ ուղղութիւնը՝ կարելի է ասել՝ հետզհետէ հանգաւ, եթէ հաշուի չառնենք Կովկասեան Հնագրական Ընկերութեան նախագահ Բերժէի խմբագրութեամբ կազմուած բազմահատոր «Արձանագրութիւնները» (Акты археогр. коммиссіи), որի մէջ գրուած են ԺԹ-րդ դարու Հայոց պատմութեան վերաբերեալ վաւերաթղթերը: Ես մտադրուել եմ ժամանակի ընթացքում հայերէնի փոխել բոլոր այդ ուղղութեան յօդուածները, թղթերը, առանձին ժողովածու կազմելու համար, որպիսիք են մեր մէջ արդ. Տէր Գիւտ Ա. քահանայի Թանկագին «Դիւանները», եւ լրացնել հայկական դիւանի պակասը:*

Հ. Տ. Ա.



# ԳԼՈՒԽ Ա.

Գաղթականութիւն եւ գաղթականութիւն, ահա այն կործանիչ տարրը, որ իր անխիղճ ճիրաններում քամել ոչնչացրել է հայ ժողովրդի տունը, տեղը, սիրտը, արիւնը եւ դեռ ոչնչացնում է։ Ծընւած, նեղուած չորս կողմից Հայոց երկիր թափուող վայրենաբարոյ թշնամիներից, հայ ժողովուրդն իր ազգային ինքնուրոյնութիւնը կորցնելուց յետոյ՝ ստիպուած էր թողնել ինչ որ իրն է, սեփականն է, ազգայինն է եւ գնալ ընկնել օտարի գիրկը, այնտեղ միայն որոնելով հանգիստը։ Հայն մինակ չէր գնում, նա վերցնում էր իր հետ իր ընտանիքը եւ պապական դաւազանը ձեռքին արագ արագ փախչում հեռանում հայրենիքից ճիշտ այնպէս ինչպէս Ղովտը Սոդոմ-Գոմորից։ Ո՛ր երկիր կամենաք ասացէք, միեւնոյնն է, հայ գաղթականին կը գտնէք. Վանեցի չոլախը Ջինաստան է հասել, կարծեմ փաստեր աւելորդ են։

Հիւրընկալող երկիրը մինչեւ բարի չէր գտել այդ խեղճերը, եւ մի կրակից փախչողը շատ անգամ ընկնում էր աւելի թէժացած կրակի մէջ, այրւում, ոչնչանում, մոխիր դառնում եւ դարերից յետոյ հասած անշունչ յիշատակարանը միայն վկայում էր, որ Հայկեան ազգից մի խեղճ էլ այդ տեղ է բնակուել։

Մենք ունենք մեր ազգի ցաւալի գաղթականութեանց պատմութիւնը։ Կլանող երկիրը Լեհաստանն է, ուր Տէր Պօղոսեանը Տէրպիլովսկու փոխուեցաւ, Յովհաննիսեանն էլ Եանովսկու, Վանովսկու եւ Իվանովսկու. էլ չենք խօսում Տէրմիկելովիչների եւ Տէր Մկրտիչովիչների մասին...

Հարեւանցի կերպով ասենք, որ հայ գաղթականները մեծ մասամբ դիմեցին Լեհաստան եւ այնտեղ էլ ոչնչացան։ 1350 թ. երբ Կազիմիր երրորդ Լեհաց թագաւորը տիրապետեց Լեմբերգ կամ Լվով քաղաքին, գովելով հայ վաճառականների առեւտուրը՝ կրօնի ազատութիւն շնորհեց նրանց, սակայն Հայն Հայի տակը փորեց եւ Նիկոլ եպիսկոպոսը, որ աւելի յետագայ ժամանակներումն էր ապրում, կարողաւ ոչնչ

ցրնել իր հաւատակից ազգակիցներին։ Այս մասին թող խօսէ «Բանի մրութեան» հեղինակը․ սակայն ես յիշեցի այս, որպէս զի գիտենանք, որ Լեհաստանը Հայերին վնասեց․ ուրիշ և անհիւրընկալ չը գտնուելով հանդերձ, իր մթնոլորտում խեղդեց Հայութեան հաւատոյ ոգին ու ծուծը և ստեղծեց ուրիշ ջերմեռանդ մի լեհահայ համայնք։

Սակայն այդքան անխիղճ չէր Ռուսիան։ Իօան Աստարարայի երկրին աւելի բարեխիղճ գտնուեցաւ։

Ե՞րբ մտան Հայերը Ռուսաց երկիրը, — մենք չը գիտենք, միայն այնքան ասենք, որ ԺԱ. դարու մատենագիր Արիստակէս Լաստիվերցին ճանաչում է «Ըռուզ» ազգին։

Հայն եղել է միշտ ճարտար վաճառական և իր լինելը, քանի որ նա գոյութիւն ունի․ նա՛ գաղթականներն իրենց կեանքն անց են կացրել այդ ասպարէզում և շատ երկիրներում արտօնութիւններ ստացել․ այդ երկիրներից մէկն էլ Ռուսիան է, որտեղ մեր պապերը մեծ դեր են խաղացել։ Տեսնենք ի՛նչ ճանապարհներով։

Մեր մատենագիրներն յաճախ տալիս են ազգ և երկիրն Բուլղարաց։ Այս երկիրը գտնուում էր հին Հայաստանի հիւսիսային կողմ, և գիտնական աշխարհն արդէն որոշել է այդ երկրի տեղը․ դա այն երկիրն է, որ մի ժամանակ կոչւում էր Վոլգար և բնակիչներն էլ Վոլգարներ, որոնք բնակւում էին Վոլգա գետի ափերի մօտ այժմեան Աստրախան և Կազան քաղաքների մէջ։ 370 թ. այդ երկիրն ենթարկուեցաւ Գոթաց յարձակման, իսկ 390 թ. Հոներն ողողեցին այդ երկիրը և երկար մնացին այնտեղ իբրև տիրապետող տարր։ Հայերը երկար ժամանակ գործ ունեցան այդ ազգի հետ և երևի հէնց հնումն գաղթեցին։ Այս դէպքում պէտք է կարծել, որ Հայերը Ալանաց երկրով Ճորայ պահակով դուրս են գնացել դէպի Բուլղարիա կամ Վոլգարաց երկիր և այնտեղ մնացել։ Ռուս պատմաբան Կարամզինն ասում է, որ Վոլգայի Բուլղարների հին մայրաքաղաքի աւերակներում բազմաթիւ հայ արձանագրութիւն կրող գերեզմաններ են գտնուած, որոնցից մի քանիսը Զ. և Թ. դարուն են վերաբերում․ մի և նոյն տեղ գտնուած են նաև հայկական դրամներ։ Նոյն պատմաբանի ասելով «90 վերստ Կազան քաղաքից հեռու, Վոլգայից 9 վերստ՝ վրայ գտնուեցան ԺԲ. դարու հայկական արձանագրութիւններ․ հաւանականաբար Հայերը, որոնք վաղուց հետէ հաստատուած են վաճառականութեամբ, պարսկական և այլ տեղական ապրանքներ փոխանակում էին ռուսական մորթու և այլ կաշիների հետ։ Այս արձանագրութիւնները 1722 թ. կարդացի հայ Յովհաննէս Բարսեղեանը թարգմանեց Պետրոս Ա. արքայի համար։»

1062 թ. Մեծ իշխանների հրովարտակներով կանչուած էին Հայեր, որոնք կոչւում էին «Նամեխսքի», որպէս զի օգնեն Կիևի երկրին Լեհերին դուրս քշելու։ Սրանք կանչուած էին այն պայմանով, որ երեք

տարուց յետոյ արձակուրդ պիտի ստանային եւ ազատ իրաւունք ունենային Ռուսաց երկրում բնակուելու. ըստ իրենց ցանկութեան։ Ռուս հայագէտ պատմաբան Ս. Ն. Գլինկին իր երկհատոր «Հայոց Պատմութեան տեսութիւն» գրքում (տպ. Մոսկուա 1833 թ.) ասում է, որ ժամանակին ոչնչացրել է այս կոչական եւ արտօնատուր հրովարտակի բնականը եւ մնացել է միմիայն հայերէն թարգմանութիւնը (°)։

Կարամզինի ասելով՝ «Վլադիմիր Մոնոմախի (1113-1125 թ. էր իշխում) ժամանակ Կիեւում իրենց հմտութեամբ նշանաւոր էին հայ բժիշկները»։

Մի ուրիշ տեղ. «Նովգորոդեան իշխանութեան պետ Ալէքսանդր Աբակումովիչը (1367 թ.) կոտորեց բազմաթիւ Թաթարներ, Հայեր...»

Ս. Մ. Բօգուչը իր «Տաւրիոյ պատմութեան» մէջ (տպ. Ս. Պետերբուրգ 1806 թ. հատոր Բ. էջ 176-177) մի յիշատակութիւն է անում. — Երբ Թաթարները տիրեցին 1262 թ. Հայաստանին, գաղթեցրին բազմաթիւ բնակիչներին Աստրախանի եւ Կազանի միջեւ ընկած երկիրներ. այստեղ սրանք երկար տանջուելով սկսեցին դիմումներ անել Կաֆֆայի գաղթականներին խնդրելով թոյլտուութիւն, որ իրենք էլ նրանց մօտ բնակութիւն հաստատեն։ Նրանց տեղաւորեցին Ղարասու-Բազար եւ Սուդաղի միջեւ. առեւտրականներն ու արհեստաւորներն տեղաւորուեցան Հին Ղրիմում, որը իրանց լեզուով Ղազարաթ անուանեցին. Կաֆֆայումն էլ բնակութիւն հաստատեցին եւ այնտեղ իրենց բնակավայր թաղը ամուր պարիսպներով պատեցին, որպէս զի պաշտպանուեն Թաթարաց արշաւանքներից։ Մի ուրիշ տեղ էլ ասում է (Բ. հատ. էջ 403). — Հայերը Արարատեան լերան Հոգեւոր Վարչութեան իրաւասութեան ներքոյ էին. Նրանք քրիստոնեաների մէջ ամենաբազմաթիւ տարր էին կազմում եւ ունէին երկու եպիսկոպոս առաջնորդ, որոնք նշանակւում էին Կ. Պօլսի Հայոց Պատրիարքի կողմից։ Դրանցից մէկը կառավարում էր Կաֆֆայի արեւելեան երկրում մինչեւ Չերքեզլերոյ Կէնի քաղաքը եղած Հայերի եկեղեցիները, իսկ միւսի թեմը Բախչի-Սարայից մինչեւ Դնեստր գետի վրայ եղած Կաւշանը, այսինքն Ղրիմի ամբողջ արեւմըտեան մասը։

Մենք նախապէս առաջ բերինք այստեղ այն յիշատակագրութիւնները, որոնք վերաբերում են այժմ Ռուսաց հովանաւորութեան տակ գտնուած երկիրներին։ Այստեղից մենք այն եզրակացութեան ենք գալիս, որ Հայերը վաղուց արդէն յարաբերութիւն են ունեցել Հիւսիսականների հետ, որին ապացոյց են նաեւ մեր մատենագիրների վկայութիւնները։ 862 թ., այն է Թ. դարում արդէն երեւաց ռուս ազգը եւ հետզհետէ տարածեց իր հզօր թեւերը դէպի հեռաւոր Սիբիրը, Կովկասը, Ասիայի խորքերը... եւ աւելի ու աւելի ծանօթացաւ Հայութեան հետ, մինչեւ որ 1827-ին «Հնչեց Ռուսաց զէնքը Արարատի բարձունքների վրայ եւ

Հայաստանի ոգին ռուս զինուորների օգնութեան հասաւ»։ 1709 թ. Հայերը գրում էին Պետրոս Մեծին. «Արի քո զօրքով եւ մենք կապստամբուենք, ոտի կելնենք»։ Հայերը կատարեցին իրենց խօսքը, միայն Ռուսաց զօրքը ուշ եկաւ — հազիւ 100 տարուց յետոյ։

---

## ԳԼՈՒԽ Բ.

Մենք խօսեցինք Բուլղարների մասին, եւ պէտք է դրանց երկրում որոնենք մեր ուզածը, որովհետեւ այդ երկիրն է միջնորդի դեր խաղացել։

Երբ Բագրատունեաց հարստութիւնը կորցրեց իր թագը, երկիրն աւերուեցաւ, եւ նենգ Յոյներից ոտնակոխ եղած երկիրն Ալփ-Ասլանի արշաւանքով վերջնականապէս թշուառացաւ եւ Հայն դարձեալ ստիպուած եղաւ գաղթելու, նա ինքն էլ չը գիտէր ո՛ւր գնար։ Բաղդի ձեռքին խաղալիկ եղած Հայերը դէպի հիւսիս եւ հարաւ-արեւմուտք դիմեցին։

Անիի վերջին կործանման համար Ղազար Ջահկեցին ասում է, որ նա կործանուեցաւ չարժից, որովհետեւ այդպէս էր անիծել Յովհաննէս Երզնկացին, բնակիչները փախան Ջուղայ, Կաֆայից ծովեզրեայ քաղաքներ, Վան, Սիս, Աք-Սէրայ, որ Աժտէրխանի մօտ է, Փէֆէ եւ այլն։ Աբրահամ Կրետացի պատմաբան կաթողիկոսն իր «Պատմութիւն Անի քաղաքին» յօդուածում ասում է Յովհաննէսի վարդապետի համար. «Ել 'ի վերայ բարձր բլրի միոյ՝ եւ անէծ զքաղաքն. եւ կրկնեաց ձուենր անէլով եւ ասէ. Տէ՛ր, այլ ոչ լինիմ երաշխաւոր. այսուհետեւ զոր ինչ կամիս՝ այնպէս արա». յանկարծ, ասում է, «Եղ սաստիկ բարկութիւնն Աստուծոյ եւ սկսաւ քաղաքն չարժիլ՝ եւ տապալել պարիսպն. եւ զայն տեսեալ՝ հալածեալ ամենայն որք ընթացմամբ՝ փոյթ ընդ փոյթ բուռն հարեալ ամենայն որք 'ի ձեռաց ընտանեաց եւ զաւակաց իւրեանց, եւ տարածեալ եղեալ վտարեցան. թողլով զքաղաքն եւ զեկեղեցիսն եւ զոսկեզօծ պալատսն եւ զծաղկաւէտ դաշտս իւրեանց, գնացին որպէս փախըստական. ճեղքեալ կէսքն 'ի Ջուղայ, եւ կէսքն առ եզերս Կաֆայից ծովուն, եւ ոմանք 'ի Վան եւ այլքն 'ի Սիս. իսկ այնք՝ որ անցին ընդ ծովն Կաֆայից՝ գնացեալ յարեւեան յազգն Նիտողաց, որ է Մողոլ, զոր Թաթար ասեն. եւ առեալ հրաման 'ի Թաթար խանէն, բնակեցան 'ի Աղստրայ կոչեցեալ վայրի, որ մերձ է Աժտէրխանու...» (Տես Աբրահամ Կրետացի, տպ. Էջմ. 1870 թ. էջ 108-109)։ Այս կործանումը ստիպա-

բար ընդունում են 1319-1320 թուականին, ուրեմն եւ այդ թուական-
ներին Հայերն անցել են Աստրախան։ Աստրախանում տպուած «Քերա-
կանութիւն Հայկայ լեզուին» գրքի յիշատակարանում (տպ. Աստր. 1798
թ.) ասուած է. «Բազմութիւն Հայ ազգի բնակչաց Անւոյ, գերուցան
եղեալ յերկրէն իւրեանց 'ի տար աշխարհ, բազումք ի նոցանէ եկեալ
նստան 'ի կողմանս երկրին Աժդերխանու եւ գտեալ անդ զայլ եւս Հայս
'ի բազմաց հետէ եկեալս, բնակեցան աստ եւ յայսմիկ աշխարհի»։ Հա-
մարեա՛ մի եւ նոյն խօսքերն են գրուած եւ Տփխսում 1846 թ. հրատա-
րակուող «Կովկաս» կաղէթայի N$^0$ 46ում. էջ 178։

Այստեղից երեւում է, որ վերջին գաղթականութիւնների կեդրոնն
Աստրախանն էր։ Այս նահանգը հնումը մերթ այս եւ մերթ այն վայ-
րենի ու կիսավայրենի ազգերի ձեռքին է եղել եւ պարբերաբար այս ու-
այն ազգի յարձակման ու ասպատակման է ենթարկուել։ Այդ նահանգի
գլխաւոր քաղաքն կոչւում էր Ատէլ (տես ռուս. Զինուորական Համրագի-
տակ. հատոր Ա. էջ 619. տպ. Պետերբուրգ 1852 թ.)։ Թ. դարու վերջումը
այժմեան Աստրախանի նահանգը երեք ազգերի մէջ էր բաժանուած.
Վոլգայի աջ ափը մինչեւ Մանըչա գետը Խազարներին էր պատկանում.
այս գետի ձախ ափի երկիրը եւ Կասպից ծովից մինչեւ Ուրալ եղած եր-
կիրը պատկանում էր Խվալիսներին, իսկ աւելի հիւսիս Վոլգայի ա-
փերը՝ Պեչենէգներին։ Թաթարաց կամ Մոնղոլաց արշաւանքների ժա-
մանակ Աստրախանը մի անուակ արշաւախմբերի կեցքի դերը կատարեց
եւ վերջ ի վերջոյ Թաթարները բնակութիւն հաստատեցին Վոլգայի ա-
փերի վրայ եւ հիմնեցին Կազան քաղաքը, նորոգեցին Ատէլ քաղաքն
եւ կոչեցին Աստօրօկանի։

Հայերը հետզհետէ գալով այդ երկրումը բնակուելու նպատակով՝
շատ մեծ արգելքների հանդիպեցան, որովհետեւ իշխող Թաթարները
շատ էին նեղում նրանց եւ վերջապէս գլխաւորն այն էր, որ վաճա-
ռականութեան համար յարմարութիւններ չըկային, իսկ Հայերի միակ
պարապմունքն այդ էր. ուստի եւ այդ անտանելի լծին չը դիմանալով
1331 թուականին չուեցին Աստրախանից դէպի Դրիմ, ուր իրենց եղ-
բայրներն համեմատաբար աւելի լաւ դրութեան մէջ էին։ Նրանց գըլ-
խաւոր գաղթատեղին էր Քաֆա կամ Թէֆէ քաղաքը (տես Աբր. Կրետ.
էջ. 109)։ Չնայած այս գաղթին, այնուամենայնիւ սակաւաթիւ Հայեր
մնացին Աստօրօկանում, որոնց մասին մենք քիչ յետոյ կը խօսենք։

Ռուսաց պետութիւնը վաղուց արդէն ծրագրել էր դուրս քշել իր
հարեւան Թաթարներին իրենց սահմաններից, ոչնչացնել Տմուտարա-
րականների իշխանութիւնը, բայց հարկաւոր էր հզօր կամքի տէր ա-
ռաջնորդ եւ դա եղաւ Իօան Դ. Խստաբարոյ ցարը եւ ամբողջ Ռուսի
ինքնակալ մեծ իշխանը։ Նրա ժամանակը Ռուսաստանի համար մի նոր
դարեշրջան էր եւ Իօան Խստաբարոն, որի առաջ դողում էին ժամա-

նակակից ռուս բարձրաստիճան պաշտօնեայք, որի հրամանի անկատար Թողնողը կախաղանի բաժին էր լինելու. վերջնականապէս որոշեց քը-չել Վոլգայի՝ Ռուսիոյ մայր գետի ափերից յանդուգն Թաթարներին։ 1547-ին Իվանի զօրքը շարժուեցաւ դէպի Կազան. իսկ 1549 Թ. ինքը բազմամարդ զօրքով շարժուեցաւ դէպի Վոլգայի երկիրները։ Առաջին անգամ գնացած զօրքն մեծ աւեր ու կոտորած գործեց, սակայն երբ ինքը գնաց, քաղաքը պաշարած ժամանակ մեծ անձրեւներից ու տարափից ստիպուած եղաւ յետ նահանջելու։ Սակայն պատերազմները չընդհատ-ուեցան. 1552-ին Կազանն արդէն Ռուսաց ձեռքին էր եւ այժմ հերթն հասաւ Աստօրականին. 1557 Թ. այս քաղաքն էլ վերջնականապէս Ռու-սաց ձեռքն անցաւ, ու այն օրուանից կոչուեցաւ Աստրախան, իսկ մեր տարեգրութեանց մէջ Հաշտարխան, Աժդէրխան եւ Հաժդարխան։

Ռուսաց Աստրախանին տիրելու լուրն հասաւ Լվով, Քէֆէ եւ Ղրիմու այլ հայաբնակ տեղեր եւ կամաց կամաց այն Հայերը, որոնք մի ժամա-նակ այդ երկրում էին բնակուել եւ գիտէին երկրի վաճառաշահ լինելը, դիմեցին նորից դէպի Աստրախան եւ այլ եւ այլ տեղերում բնակութիւն հաստատեցին։

1635 Թ. Աստրախանում հինգ տուն Հայ կար. իսկ շատ Հայեր էին գալիս առեւտրական գործերով Աստրախան, որոնք իրանց մասին լուր հասցրին Էջմիածին, նկարագրելով նրանց թշուառ վիճակը եւ որ գըլ-խաւորն է տանից հոգեւոր մխիթարութեան լինելը։ Ս. Էջմիածնի հա-մար այդ տարիներին աւելի բաղդաւոր էին քան մի որեւէ ուրիշ ժամա-նակ։ 1633 Թ. յունուար 13-ին ազգի եւ հոգեւորականների հաճու-թեամբ կաթողիկոս օծուեցաւ Փիլիպպոսը, որին հարկաւ Ծնող մակա-նուն պէտք է տալ։ 1635 Թուականին եղած Տաճկա-պարսկական պա-տերազմներից նիւթապէս քայքայուած Էջմիածնին մի գործօն ձեռք էր հարկաւոր, որովհետեւ վանքումն եղած փայտեայ շինութիւնները բոլո-րովին խարխուլ դրութեան մէջ լինելով, ոչ միայն նորոգութեան այլ եւ վերաշինութեան կարօտ էին եւ Փիլիպպոսը վերանորոգեց, վերաշինեց։ Փիլիպպոսը առ հասարակ եկեղեցաշէն հայրապետներից էր եւ արթուն աչքով հսկում էր իր հօտին։ Լսելով Աստրախանի հայերի վիճակը նա անմիջապէս նրանց հետ յարաբերութեան մէջ մտաւ եւ յորդորեց եկե-ղեցի շինելու. սակայն ի՞նչ կարող էին անել հինգ տուն աղքատ հայ վաճառականները. 'ի հարկէ ոչինչ։ Փիլիպպոս հայրապետը ստիպուած էր այլ միջոցների դիմելու։ Նա գրում էր, որ առաջին մխիթարու-թիւնը պէտք է Էջմիածնից ուղարկել. հարկաւոր էր մի քարոզիչ, որ շրջէր Աստրախանի ու Կազանի նահանգում ցրուած Հայերի մէջ. ժո-ղովարարութիւն անէր եւ Վեհի այդ գեղեցիկ միտքն 'ի կատար ածել։ Եւ ահա Հայրապետն երեք կոնդակ արձակեց, մէկը յանուն Աստրախանի հայ բնակիչների. «զի յուսացեալ յԱստուած ձեռն արկցեն շինել զեկե-

ղեցի », միւսը առ Թագաւորն Ռուսաց Միխայէլ Ֆէօդորվիչն, որի մէջ աղերսում է, որ Աստրախանի Հայերին հրաման տայ եկեղեցի շինե-լու. իսկ երրո՞րդը. երրորդը յանուն նոր նշանակուած նուիրակի՝ այդ նուիրակը նշանաւոր Ոսկան վարդապետն էր. (Կովկաս. 1846 Թ. Nº 47).

Ոսկան վարդապետը մեծ դեր է խաղացել մեր տպագրութեան գոր-ծում. Նա թէպէտ Երեւանցի էր կոչւում, սակայն ծն. Սպահան քա-ղաքում 1615 Թ., ուրտեղ նա աշակերտեց Խաչատուր վ. Կեսարացուն եւ Մովսէս կաթողիկոսի հետ Էջմիածին եկաւ, ու կուսակրոն քահ. ձեռնադրուելով նորից Սպահան անցաւ. Յետոյ Փիլիպպոս կաթողիկոսը թէեւ նրան եպիսկոպոս ձեռնադրեց, սակայն Ոսկանը Մեծ Վարդապե-տից օրինակ առնելով՝ իւրն ընդ միշտ «Վարդապետ» կոչեց.

Ոսկանը Էջմիածնում եղած ժամանակ ծանօթացաւ Պաւլօ Պիրոմալի Դոմինիկեան կրօնաւորի հետ եւ նրանից լատիներէն սովորեց (*).

Ահա այս Ոսկան վ. ճանապարհ ընկաւ դէպի Աստրախան Վէհի պատուէրը ճշտութեամբ կատարելու. Սա Ռուսաստանի առաջին նուի-րակն էր եւ այդ ժամանակից սովորութիւն եղաւ նուիրակ ուղարկե-լու Ռուսաստան. միայն յետագայ նուիրակներն յաճախ կոչւում էին Ռուսաստանի եւ Հնդկաստանի.

Ռուսաց ինքնակալն եւ Ռոմանովի Հարստութեան հիմնադիր Միխա-յէլ Ֆէօդորովիչ Թագաւորն սիրով կատարեց Հայոց կաթողիկոսի խնդ-իրը, եւ բարձրագոյն հրովարտակով հրամայեց Աստրախանի Վոեվոդա-յին (Զօրապետ, որ մի տեսակ շրջանի կառավարիչի դեր էր խաղում) յայտնել տեղւոյն Հայերին բարձրագոյն հաճութիւնը եկեղեցի շինելու մասին. Ոսկանն էլ կատարեց իր պաշտօնը եւ ինչքան ժողվում էր նուէրներ, անմիջապէս ուղարկում էր Աստրախանցոց. Այդ մի եւ նոյն ժամանակներ մի ինչ որ եպիսկոպոս գնաց Աստրախան. թէ ո՛վ էր. նա մեզ յայտնի չէ. բայց հաւանականաբար Տաճկաստանի եպիսկոպոսներից պէտք է լինէր. որովհետեւ Ղրիմում այդ ժամանակներ Տաճկահայ ե-պիսկոպոս առաջնորդներ կային եւ Ղրիմն էլ երկու թեմի էր բաժան-ուած. Սրանք հաւանականաբար այցելում էին նաեւ այլ քաղաքների Հայերին. որովհետեւ Քէֆէից արեւելեան կողմ բաւական մեծ թեմ կար. Այս եպիսկոպոսն էլ նպաստեց գործին. եւ 1640 Թ. շինեցին մի փայտեայ

(*) Ոսկան վ. յետոյ իր եղբօր Աւետիս վաճառականի հրաւիրմամբ Ամստերդամ անցաւ եւ տեղ հաստատ 1662 Թ. որ մի շարք բազմածախ գրքեր տպագրեց, ի թիւս այլոց Աստուածաշունչ, Առաքել Դաւրիժեցու պատմագրութիւնը, Խորենացու աշխար-հագրութիւնն ու Աղուէսագիրք եւայլն. Մանրամասն տեղեկութիւններ տես «Յառ. Ե-րեւելի արանց» հատ. Բ. — Ոսկան Վ.

եկեղեցի յանուն ս. Աստուածածնի։ Շնորհիւ այս եպիսկոպոսի շուտով քահանայ եւ սարկաւագ էլ ունեցան Աստրախանցիք։ Փիլիպպոս եւ յաջորդ Յակոբ կաթողիկոսների Աստրախանցիներին տուած զանազան բարիքներն ու շնորհները այնքան մեծ էին, որ եկեղեցում սրբոց անուններն յիշելիս երկար ժամանակ ասում էին եւ կարծեմ դեռ այժմ էլ այդ սովորութիւնն չի վերացել՝ «եւ սրբոց Գրիգորիսեանց եւ Ներսիսեանց, եւ Փիլիպպոսի եւ Յակոբայ. հովուաց եւ հովուապետաց Հայաստանեայց, եղիցի յիշատակ 'ի սուրբ պատարագս, աղաչեմք»։

Հայոց Հայրապետի այս ուշադրութիւնն մի անսովոր սերմ էր, որ ընկաւ այդ հողի մէջ, շուտով ծիլեր արձակեց եւ ծաղկաւորուեցաւ։ Այն օրուանից, երբ եկեղեցի շինուեցաւ, Աստրախանը դարձաւ մի տեսակ հայութեան կեդրոն եւ հայ վաճառականներն սկսեցին կապուել այդ քաղաքի հետ։ Ինչպէս Պարսկաստանից, այնպէս էլ Պարսից ձեռքը գտնուած միւս երկիրներից կրօնաւոր այցելուներ երեւացին, եպիսկոպոսներ, վարդապետներ, քահանաներ Էջմիածնից, Գանձասարից եւ այլ տեղերից։ Պարսկաստանի հայ վաճառականները տեսնելով, որ Աստրախանի Հայերն արդէն կանոնաւոր առեւտուր են բացել, սկսեցին յարաբերութիւն եւ այս անգամ Աստրախանն արդէն փոխանակ մոնղոլական յարձակումների, դարձաւ հայ վաճառականական առեւտրական արների կեդրոնատեղի։

Կոչենք մենք այդ վաճառականութեան։

## ԳԼՈՒԽ Գ.

Ինչպէս յիշեցինք, Աստրախանը վաճառականութեան կեդրոն դարձաւ եւ Պարսկահայերն էլ կապուեցան այդ քաղաքի հետ։ Այժմ հարեւանցի կերպով ծանօթանանք թէ ինչպէս ծագեց հայ վաճառականութիւնը Պարսկաստանում։

1585 թ. Պարսկաստանում թագաւորեց Շահ-Աբաս Ա. Մեծը, որ նշանաւոր է Սէֆէվիեան հարստութեան մէջ իբրեւ վերածնիչ, իր երկրի սահմաններն ընդարձակող եւ որ գլխաւորն է իր երկիրն բարեկարգող եւ Հայաստանն աւերող. 1602-1617 թուականների ընթացքում նա նորից ձեռք բերեց այն երկիրները, որոնք մի ժամանակ Պարսկաստանին էին պատկանում (տես Պետրոս Մեծի յարաբ. Հայ ժողովրդի հետ, էջ Դ, ռուս. տպ. Պետերբուրգ 1898). Նրա արշաւանքի ճանապարհն էլ դժբաղդ Հայաստանն էր. եւ որովհետեւ մեծ մասն արդէն Տաճկաց ձեռ-

քին էր, ուստի և հարկաւոր էր վերստին տիրել այդ երկրին։

Մի զարհուրելի միտք ծագեցաւ այդ մարդու մէջ, որի նման դէպ-քերն շատ քիչ կան պատմութեան էջերում.—

Հարկաւոր էր իր պետութեան ապահովութիւնը, և Շահ-Աբասն մտածեց ամայացնել Հայոց երկիրն, որպէս զի Տաճիկներն նախ քան իր երկիր մտնելը ստիպուած լինեն անապատներով անցնելու։ Շահին ընձակատար եղաւ Վրացի հաւատուրաց Ամիրգունայ խանը, և մինչեւ Ջղալօղլու Սինան փաշան գալու էր 'ի րա դէմ, Շահը հրամայեց Ա-րարատեան երկրի բոլոր բնակիչներին ժողովել Երասխ գետի ափին։ Կանչուած էին Ջուղայի հայ իշխանները, որոնք անհագին հարստութեան տէր մարդիկ էին և նոյն իսկ Եւրոպայի հետ առեւտրական յարաբերու-թեան մէջ էին։ Առաքել Դաւրիժեցին նկարագրում է թէ ինչպիսի պա-տիւներով ընդունեց Շահ-Աբասին Խօջայ Խաչիկը, որը զարմանք պատ-ճառեց նոյն իսկ Շահին։ Բնական է, որ Շահին պիտի գրաւէր հայի ընդունակութիւնը, և նա հաւատացած էր չնորհիւ նրանց՝ բարեկաւել իր երկրի վաճառականութիւնն։ Հայ իշխանները որոնք կանչուած էին, իրենց գլուխն ունէին Տէր Յովհաննէսին։ Շահն ասում էր, որ պէտք է նրանց տեղափոխէ, իսկ պատերազմից յետոյ նրանք կրկին կը վերա-դառնան իրենց երկիրը։ Հայերը խորհուրդ տուին չ'անելու, ասելով որ աշունն է և ժողովրդի համար դժուար է, հարկաւոր է ձմեռել։ Սակայն նա անողոք գտնուեցաւ և իր իշխաններին հրամայեց անմիջա-պէս կատարել։ Հայոց ՌԾԴ (1605) թուականին էր կատարւում այս ազգային մեծ և կործանարար գաղթը։ Առաքել Դաւրիժեցին ասում է. «Զոմանս մահու հարուածով գանելով, և զոմանց զունչս և զականջս հատանելով և զոմանց զգլուխն կտրեալ 'ի ձող ցցէին, որպէս զեղբայր Առաքել կաթողիկոսին, որում անունն էր Յոհանջան, զորա և զայ-լոյ ութեւտասն զգլուխս կտրեցին և 'ի ձող ցցեցին յեզր գետոյն Ե-րասխայ.» (Առաք. 1896, Էջմիած. էջ 42)։ Ժողովրդին ծեծում էին, նեղում և ստիպում անցնել գետով։ Շատ քիչ նաւեր կային. ուստի և ժողովուրդը վայնասուն՝ լաց ու կոծ բարձրացնելով թափուեցան Ե-րասխի մէջ. խեղդուողներուն ձայնը, կսկծանքն, մորմոքումն, ճիչերն. վայերն ու հառաչանքներն դղրդացնում էին երկինք և խեղդւում կոր-չում անհետ։ Ժողովրդին քշում էին խորտ ու բորտ ճանապարհներով, որպէս զի Օսմանեան զօրքն չը գտնէ նրանց և ետ չը խլէ։ Ահա այս նեղութիւններով գնացին նրանք դէպի Խորասան։ Մէջ բերենք այս-տեղ ժամանակակից Ստեփան վարդապետի ողբն այս հրէշային գաղթա-կանութեան մասին.

Ափսոս քեզ Հայոց խեղճիկ ժողովուրդ,
Ցիրուցան ելաք անմեղ անխորհուրդ,
Գերի գնացանք դէպ 'ի Խորասան
Քաղցած ու ծարաւ, ակլոր թշուառական։

Խարխուր ու խաւար յաւէտ զիմացաք,
Ձեր քաղցրիկ երկրէն ոտ դուրս չը դրաք.
Խիմի ձեր խօր մօր գերեզման թողաք,
Տըներն ու ժամը ուրիշին տուաք։

Էս սիրուն դաշտերն, մեծ մեծ քաղքըներն,
Քաղցրիկ ջրերն, ձեր չէն գեղերն,
Ո՞ւմն աք թողման դուք որ գնամանաք,
Էսպէ՞ս կը լընի որ մոռանում աք։

Վախում եմ էնպէս մաքերնուցդ ընկնի,
Ինչքան որ ողջ աք՝ մաքերնուդ չընկնի,
Բարի ձեր որդւոց թոռանց պատմեցէք,
Էսպէս խայրենիքն քանդած թողեցիք։

Մասիսի անունն, Նոյայ տապանի,
Արարատ դաշտի. սուրբ Էջմիածնի,
Մեր Խոր Վիրապի, սուրբ Գեղարդ. Մուղնի,
Զմռնանան մինչ 'ի օրն դատաստանի։

Աչքս կուրանար, չինքըս կորուէր,
Խեղճ Հայաստան, քեզ էսպէս չը տեսնէր,
Թէ մեռած էի, ինձ երանի էր,
Քան թէ կենդանի՝ աչքըս բաց տեսնէր։

(Բազմավէպ, 1847. էջ 95)։

Այս թշուառութեան ենթարկուեցաւ նաև բազմամարդաւոր ու հարուստ Ջուղայ քաղաքն, որ, ինչպէս ասացի, ժամանակին Հայոց աշխարհումը միակն էր։ Ջուղայեցիք գնացին Պարսկաստան, Շահ-Աբասից առանձին արտօնութիւններ ստացան եւ հիմնեցին Սպահան մայրաքաղաքի մօտ Նոր Ջուղան, որը փոքր ժամանակում համարեա նոյնպիսի հռչակ ստացաւ, ինչպիսին էր Հին Ջուղան։ Նոր Ջուղան կարճ ժամանակում վաճառականութեան կեդրոն դարձաւ, բնակիչներն անցան Հնդկաստան, ուր մինչեւ անգամ ահագին մարգարտի որսարաններ ձեռք բերին, հիմնեցին ընկերութիւններ, առեւտրական տներ եւ կատարուեցաւ Շահ-Աբասի ցանկութիւնը։ Ահա որոնք էին, որ առաջին անգամ պարսկական ապրանքներով լցեցին դէպի Ռուսիա։

Ջուղայի եւ Սպահանի հայ վաճառականների արտահանած վաճառքներն էին մետաքս, անպատրաստ մետաքս (ղաճ), մետաքսէ գործուածքներ, բամբակ, իսկ Ռուսաստանից դուրս էին տանում մորթեր սամոյրի, աղուէսի, բէլկի (բօրբ), կղնաքիսի եւ այլ մանր մունր իրեղէններ։ Առեւտուրը կատարւում էր շատ սակաւ դէպքում դրամական հաշիւներով, այլ ուղղակի փոխում էին միմեանց հետ։

## ԳԼՈՒԽ Դ.

Դարձեալ մեզ անյայտ է մինչեւ Ռուսաստանում առաջին անգամ Հայերի վաճառականութիւն սկսելը, միայն մի աղբիւր, որ մեզ կարողանում է տալ այդ մասին տեղեկութիւն՝ դա Ռուսաց արխիւն է։ Այնտեղ էլ այսքան յայտնի է, որ գոնէ հայ վաճառականութիւնն պաշտօնական է ճանաչուած 1626 թ. մարտ 26-ին։ Այն ժամանակ, ինչպէս յայտնի է, գոյութիւն ունէր Ռուսաստանում Посольскій Приказ — «Դեսպանական Ատեան», որի հիմնադիրն էր Իօան Գ. Ռուսաց թագաւորը։ Այս Ատենի պարտականութիւնը նոյն էր, ինչ որ այժմ արտաքին գործոց նախարարութեանը — յարաբերութիւն ունենալ օտար պետութիւնների հետ, կարգադրել այլ եւ այլ քաղաքական հարցերն եւ այլ։ Հայերն եկած լինելով օտար պետութիւնից — Պարսկաստանից, յարաբերութիւն ունէին այդ հաստատութեան հետ։ Ահա այդ Ատենի գործերի մէջ կայ հետեւեալ տեղեկութիւնը. «Մաքսական ատենից Դեսպանական ատեան ուղարկուած ցուցակ այն ապրանքների, որոնք բերուած են Մոսկուա հայ վաճառականների ձեռքով»։

Այսպիսով 1626 թ. մարտից սկսեցին վաճառականներ գալ Մոսկուա, բերելով ապրանք։ Թէ ո՞վ էր կամ ո՞վքեր էին այդ վաճառականները, մեզ յայտնի չէ, սակայն պաշտօնական սկիզբն այդ է։

1647 թ. մարտին Աստրախանի հայ վաճառական Թաւաքալեանը՝ որի սերունդներն դեռ այս օր էլ կան Ղզլարում, խնդիր ներկայացրեց Դեսպանական Ատենին խնդրելով որ իրեն թոյլ տրուի գնալ Ռուսիոյ այլ եւ այլ քաղաքներ եւ ապրանք տանել վաճառելու համար։ Ատեանն իրաւունք տուեց։

Պարսկաստանցի հայ վաճառականները լսելով այդ արտօնութիւնների մասին, ուրախացան եւ նրանց ընկերութիւնն, որ մասնաւոր յարաբերութեան մէջ էր Աստրախանի հետ, որոշեց մի միայուն պայման

կնքել Ռուսաց պետութեան հետ եւ Թագաւորին էլ ներկայացնել մի որ եւ է հազուագիւտ եւ թանկագին նուէր, որպէս զի ցոյց տուած լինեն իրենց արտադրելի ապրանքների նախագաղափարը։

Ջուղայի Հայերի մէջ կային այնպիսի մաքուր գործ հանող ականագործ, արծաթագործներ ու ոսկերիչներ, որ նրանց ձեռագործն դեռ այսօր էլ զարմացնում է տեսնողներին։ Ահա այդ արհեստաւորների ձեռակերտ գահաւորակն ուղարկուեցաւ Ռուսիա։

Սպահանի Հայ Վաճառականական Ընկերութիւնն արդէն վաղուց գոյութիւն ունէր եւ առեւտրական կապերով կապուած էր Հնդկաստանի հետ, նոյն իսկ Հնդկական քաղաքներում բաժանմունքներ ունէր։ Գըլխաւոր վաճառելիքներն էին մետաքս, մետաքսեայ ու բամբակէ գործուածքներ, թանկագին ակներ եւ այլն։ Նրանց քարաւանները գնում էին մինչեւ հնդկական ու տաճկական ծովեզերեայ քաղաքներ, Բուխարայի կողմեր, Տփխիս, ուր վաղուց արդէն պարսիկ վաճառականներն սեփհական քարվանսարայներ ունէին։ Վրացերէն մի վէպիկի մէջ, որ կոչւում է «Կորած երեխայ», նկարագրուած է պարսիկ վաճառականների առեւտուրն։ Բնական է որ մեր երկիր, ուր առանձին առեւտրական դիւրութիւններ էր սահմանում, աւելի ցանկալի պէտք է լինէր Հայ Վաճառականական Ընկերութեան։

1641 թ. Պարսից Շահի մօտ արհեստական մասի կառավարիչ էր Յակոբ Յովհաննէս Ջուղայեցին, (որան Գ. Լէօն իր «Հայկական տպագրութեան» մէջ շփոթել է Յովհաննէս վարդապետի հետ)։ Սա Եւրոպա ճանապարհորդելով գրաւուեցաւ մեքենայական արհեստով եւ Պարսկաստան մի քանի գիւտերութիւններ ու նոր մեքենաներ մուծեց, որոնցով օգտւում էր Հայ Վաճառականական Ընկերութիւնն։ Սպահանում առաջին անգամ տպագրութիւն մուծողն էլ սա էր եւ առաջին անգամ իր շինած տառերով տպեց ս. Պօղոսի Թղթերը, եօթը գլուխ Սաղմոս, սակայն տպագրական թանաք չունենալու պատճառով թողեց Աստուածաշունչ տպելու միտքը։ Այս մասին բաւական տեղեկութիւն է տալիս Պետերբուրգի հայ տպագրութեան ժրաջան մշակ Յովհաննիսեան Յովսէփ սարկաւագն իր ռուս լեզուով «Հայկական յիշատակարաններ» (Արմեանսկիայ Պամեատնիկի, Ս. Պետերբուրգ 1897 թ.) գրքում։ Երեւի այդտեղից է վերցրել այդ Յակոբ Յովհաննէս Ջուղայեցու մասին նաեւ Ս. Ն. Գլինկին (հեղինակ «Ժողովածու Արձանագրութեանց», որոնք վերաբերում են հայ ժողովրդի պատմութեան, Մոսկուա 1833-1838)։

Հայ վաճառականներն իրենց դեսպան ընտրեցին իրենց աւագագոյն վաճառականներից մէկի որդուն Խօջա Զաքար Սարհադեանին, եւ նա իր հետ վերցնելով էլի ինը հոգի՝ 1659 թուականի ամառը ծովով գնաց Աստրախան։ Օգոստոս 7-ին նա արդէն Աստրախանումն էր, ուր նա ծանօթացաւ տեղական հայ վաճառականների հետ եւ ապա ներկայացաւ

տեղւոյն իշխողներին՝ իշխան Լվովին եւ Բեկլեմիշեւին. (այս մասին տես Ժողովածու արձանագրութեանց, էջ 63-67. հատոր Բ.), որոնց յայտնեց իր գալու պատճառն եւ գնողանութեան մասին։ Իշխաններն նրան ապահովեցրին եւ նա սեպտեմբեր 19-ին ճանապարհ ընկաւ դէպի Մոսկուա։ Յաջորդ տարւոյ մարտ ամսին նա արդէն Մոսկուայումն էր, ուր նոյնպէս ներկայացաւ Դեսպանական Ատեանին եւ յայտնեց իր գալու պատճառն։ 1660 թ. ապրիլ 12-ին նա բաղդ ունեցաւ ներկայանալու Ալէքսէյ Միխայլովիչ Թագաւորին եւ ներկայացրեց այն նուէրները, որ ուղարկել էր Սպահանի Հայ Վաճառականների Ընկերութիւնը։ Դրանք էին.

Փառաւորակ կամ գահ, ոսկով ու արծաթով պատած, ադամանդներով, մարգարիտներով ու յակինթներով զարդարած։ Գահի վրայ միայն 876 հատ այլ եւ այլ մեծութեան ադամանդ կար, մէկ լալ, 1223 հատ յակինթ, գահը պատած էր մախմուրով, որի վրայ զարմանալի երեք թել մարգարիտ էր անցկացրած, երկու կողմից երկու հրեշտակ, որոնք նոյնպէս մարգարիտներով էին զարդարուած։ Գահի վրայ հետեւեալ լատին արձանագրութիւնը կար.

Potentissimo et Invictissimo Moscovitorum
Imperatori Alexio, in terris feliciter regnanti,
hic tronus, summa arte et industria
fabrefactus, sit futuri in coelis et perennis
faustum felixque omen. Anno Domini 1659.

(Հզօրագոյն եւ ամենաանյաղթ Մոսկուայի ինքնակալ Ալէքսէյին, երկրիս վրայ բաղդաւորապէս թագաւորողին. այս մեծարժէք բազմաջան աշխատանքով կերտուած գահը թող լինի (նուէ՞ր) բաղդաւոր նախատեսութեամբ երկնագնայ անվերջ սքանչելեաց։ Յամի տեառն 1659։)

Բացի այս գահը ներկայացրեց նաեւ հետեւեալ նուէրները։ Խորհրդաւոր ընթրիքը պղնձէ տախտակի վրայ նկարած, ոսկէ մատանի ադամանդով, խորովելու՝ տապակելու արծաթէ աման, պարսկական տափակ արծաթեայ հեղուկամանով, հատուէտ իրեր, 15 չիչ Շահի գործածած չարափ, երեք չիչ վարդաօղի, 4 չիչ անուշահոտ օղի, մի չիչ նարնջի օղի, 6 մախալ արեւելեան անուշահոտութիւն, 12 ունի ատա, ոսկէ բարձունքով սաղ կամ աուխղ զարդարուած թանկագին քարերով, որի մէջ կայ չինուած մի թ·ոնաքաման, զարմանալի երկու ադամանդազարդ ոսկէ մատանի, արծաթագործ արկղիկ կողպէքով թանկագին իրեր ......հաւ-...ւ համար, 1 1/2 փութ հնդկական խիժը։

Թագաւորն այս ընծաները ընդունելով, հրամայեց արքունիքից հոգալ Խօջայ Զաքարի բոլոր կենսական ծախսերն, իսկ Խօջային էլ հրամայեց հետեւեալ օրը իրեն ներկայանալ Դիւանական Ատեանում: Թագաւորը պատուիրեց իր մօտ հաւաքել ռուս նշանաւոր արհեստագէտներին եւ գնահատել տուեց գահը. Նրանք գին դրին 22,589 ր. 60 կոպէկ: Սա այնպիսի հրէշային մեծ գումար էր այն ժամանակ եւ այնպիսի արժողութիւն ունէր, որ այժմեան մի միլիոն րուբլուն հաւասար պէտք է համարել: Ինչո՞ւ ենք հեռու գնում, դեռ 50 ական Թուականներին Տփխիսում 2-3 հազար Նիկոլայի մանէթանոց արծաթ ունեցողն համարւում էր մեծ հարստութեան տէր:

Խօջայ Զաքար Սարհատեանն Թագաւորի պատուէրի համաձայն հետեւեալ օր ներկայացաւ Դիւանական Ատեանին: Այնտեղ նրան հարց տրուեցաւ, Թէ արդեօք կարո՞ղ է Ռուսաստան բերել հնդկական ու պարսկական Թանկագին ակներ, Թութակներ եւ այլ Թռչուններ, գազաններ եւ Թէ ինչ եղանակով կարելի է Պարսկաստանից Ռուսաստան հրաւիրել գեղարուեստագէտներ, ոսկերիչ-արծաթագործներ, ակնագործներ եւ այլ տեսակ արհեստագէտներ:

Խօջան յայտնեց, որ իր հայրը նշանաւոր վաճառական է, Հնդկաստանից ամեն տեսակ քարեր է արտահանում, եւ որ ունի ընկերութիւն, այլ եւ այլ պետութեանց մէջ գործակալներ եւ մեծ առեւտուր: Յայտնեց նաեւ, որ գահը շինուած է Իսպահանում արքունի արհեստագէտների ձեռքով եւ եթէ հարկ լինի, դեռ դրանցից էլ աւելի լաւեր կարելի է շինել: Թռչուններ բերելու համար խօսք տուեց, իսկ գազաններ բերելու գործը մի քիչ դժուար Թուաց: Յայտնեց նաեւ, որ շատ արհեստաւորներ կան եւ կաշխատէ Ռուսաստան ուղարկելու: Այն էլ յայտնեց, որ եթէ 50 հազար րուբլու տապճակ (չափրախ, ձիու փռոց) պատուէր տան, այն էլ կարող է շինել եւ այդ բոլորը նա կանէ 'ի սէր այն բանի, որ Ռուսաց Թագաւորը քրիստոնեաների պաշտպանն է: Թագաւորը հրամայեց յայտնելու իրեն բոլոր նուէրների գինը, սակայն Խօջայ Զաքարը հրաժարուեցաւ՝ խնդրելով Թագաւորին, որ նա այդ բոլորն էլ ընդունի իբրեւ նուէր: Սակայն Թագաւորն այդ պատասխանով չը բաւականացաւ եւ, ինչպէս տեսանք, Մոսկուայի վաճառականներից իմացաւ գահի գինն, ուստի եւ խնդրեց Խօջային, որ նա յայտնէ գոնէ իբրեւ ինչ է նստել գահը. այն ժամանակ միայն Խօջան ասաց, որ 24,443 ր. 50 կոպէկ է նստել: 'Ի տրիտուր այս մեծարժէք նուէրների Թագաւորն հրամայեց տալ նրան 4000 րուբլի արծաթ, 12,500 րուբլէ պղնձէ, եւ մի եւ նոյն ժամանակ իրաւունք տուեց Սիբիրական Ատենից 18 հազար րուբլու սամոյրներ գնելու պետական գներով, նոյնպիսի իրաւունք տուեց նաեւ այլ ապրանքների վերաբերեալ:

1660 Թ. օգոստոսին արձակուրդի հրաման ընդունելով եւ անցաթուղթ

ստանալով, ուրախացած՝ նոյն ամսի 20-ին ճանապարհ ընկաւ (*) դէպի Աստրախան, այնտեղով Իսպահան գնալու համար։

## ԳԼՈՒԽ Ե.

Այն ժամանակ երբ Խօջայ Զաքար Սարհադեանը Ռուսիա գնաց եւ արդէն վերադարձաւ, Իրանի թագաւոր Շահ-Աբբաս Բ. որը Հայերին այն աչքովը չէր նայում ինչպէս իր նախահայր Շահ-Աբբաս Մեծը, լսելով որ իր հպատակ Հայերը Ռուսաց պետութեան հետ բանակցութիւն են սկսել, բարկացաւ եւ այդ գործին մասնակից եղողներին բոլորին էլ այլ եւ այլ պատիժների ենթարկեց։ Այսպիսի անյաջողութիւնը միանգամայն ոչնչացնում էր այն բոլոր արտօնութիւնները, որոնք դեռ նոր էին ստացուած, հետեւապէս եւ գործի սաղմը խեղդման՝ ոչնչացման էր դատապարտուած։

1665 թ. վերածնութեան դարագլուխն էր հայ վաճառականութեան համար։ Պատճառը Շահի մահն էր։

Այս վերածնութիւնն այն չէր, ինչ որ կար Շահ-Աբբաս Մեծի ժամանակ։

Շահ-Աբբաս Մեծը Իրանի գահի վրայ բազմելու օրից իր երկրի բարեկարգութեանց եռանդ եղաւ։ Նախ եւ առաջ նա անգղիացի Ռուբերտ Շիրլէյի օգնութեամբ զինուորական բարեկարգութիւն մտցրեց իր զօրքի մէջ եւ ապա հաստատ համոզուած լինելով, որ պետութեան ոյժն երկրի հարստութեան մէջ է, վաճառականութեան ծաղկման ձեռնամուխ եղաւ։ Այս գործին նպատակայարմար գտաւ Ջուղայեցի Հայերին, որովհետեւ արդէն Հին Ջուղայում տեսել էր նրանց առասպելական հարստութիւնը։ Երկրի ամենաարդիւնաբեր մասը մետաքսավաճառութիւնն էր, որի մենավաճառութիւնն իրեն էր վերապահել, ուստի եւ այդ մենաշնորհը որոշ գումարով նա Ջուղայեցի Հայերին կապալով տուեց, որով եւ պետութիւնն առատապէս օգտւում էր եւ որ գլխաւորն է, այդ օրուանից

(*) Մենք այստեղ հարեւանցի կերպով հարկաւոր ենք համարում յիշելու, որ Ռուս. «Պատմական տեսութիւն հին ռուսաց թանգարանի» գրքում էլ մի յիշատակութիւն կայ, որ 1554 թ. Շաքու ու Շամախու իշխողներն դեսպաններ ուղարկեցին Ռուսիա առեւտրի հարցի վերաբերեալ, նոյնպէս Աստրախանի վրայով։ Նրանք շատ թանկագին իրեր զարդեր են տարել Ռուսիա և հրովարտակներ ստացել, սակայն չէ յիշուած թէ ովքեր են եղել։

*Ջուղայեցիք սկսեցին հետզհետէ հարստանալ. թէ ի՛նչպէս, — այդ մենք կը տեսնենք։*

*Մետաքսի մենավաճառը Պարսկաստանում թողնել անկարելի էր, ուստի եւ սկսեցին առեւտուր Տաճկաստանի եւ արեւմտեան Եւրոպայի հետ։ Նրանց ճանապարհն էր Թաւրիզ, Վան, Էրզրում, Տրապիզոն եւ այլ ծովեզրեայ քաղաքներով Զմիւռնիա, Կ. Պօլիս, Վենետիկ, Ճենովա, Մարսէյլ եւ նոյն իսկ Ամստերդամ, ուր մինչեւ անգամ առեւտրական տներ ունէին։ Ռուսաց հետ ունեցած յարաբերութիւններն ուրիշ ճանապարհներ բաց արին Աստրախան - Մոսկուա - Արխանգելսկ - (Նովգորոդ-Սմօլենսկ) - Շվեդիոյ քաղաքներ եւ Ամստերդամ.*

*Եւրոպայից նրանք տանում էին Պարսկաստան մահուդ, ոսկի, արծաթ, ժամացոյցներ, արհեստական մարգարիտ, բուստ, հայելիներ եւայլն, որոնք յաւ էին ծախւում պարսկական եւ հնդկական քաղաքներում։ Մենք մի ուրիշ աշխատութեան մէջ կը խօսենք Հնդկահայ վաճառականութեան մասին, միայն այսքան ասենք առ այժմ, որ Հայերը Հնդկաստանի հետ վաճառականութիւն սկսեցին Շահ-Աբբաս Մեծի ժամանակ եւ այնտեղ էլ գործը կանոնաւոր կերպով էր առաջ գնում։ Հայ վաճառականները Շահ-Աբբասի համար քաղաքական դեր էլ էին կատարում. Շահից նամակներ էլ տանում եւրոպական թագաւորների մօտ եւ պատասխան բերում, նոյնպէս եւ եւրոպական երկիրների մասին տեղեկութիւններ հաղորդում Շահին։*

*ԺԷ. դարու առաջին քառորդում Ջուղայում մօտ 30000 բնակիչ կար եւ եւ 20-ից աւելի եկեղեցի։ Այս դարը Ջուղայի եւ Սպահանի ծաղկման դարն է եւ այդ ժամանակ Անգլիացի, Հոլանդացի եւ Ֆրանսիացի վաճառականներ էին գալիս Սպահան եւ Ջուղայ եւ բազմաթիւ եւրոպացի արհեստաւորներ կային Շահի ծառայութեան մէջ։ Շահ-Աբբաս Մեծը մինչեւ անգամ աշխատում էր եւրոպական պետութեանց հետ քաղաքական յարաբերութիւն եւ բարեկամութիւն պահպանել եւայլն (տես Պետրոս Մեծի յարաբ. Հայ ժողովրդի հետ, էջ Ե.-Զ.), սակայն նրա յաջորդները դաւաճանեցին այդ քաղաքականութեան եւ կարգերը տեղի տուին հներին. Շահ-Աբբաս Մեծը իր հետ գերեզման տարաւ այն բոլորը, ինչ որ ինքն էր մտցրել Պարսից երկրում եւ հնութեան՝ փթած բարքերի դրօշակը սկսեց ծածանել Սասանեանց փայփայած երկրումը։*

*Շահ-Աբբաս Բ. Փոքրի մահը Հայերին հոգի տուեց. նրանք վճռեցին վերանորոգել իրենց յարաբերութիւնները Ռուսիայի հետ, իրագործել այն ծրագիրները, որից նրանք սպասում էին անտեսական բարւոքումն եւ այն էլ կարճ եւ ձեռնտու ճանապարհներով։ Իրանի նոր վեհապետը՝ Սուլէյման Շահը՝ կարծես աւելի խելօք մարդ էր եւ ահա՛ հայ վաճառականներին շնորհեց առեւտրական գործի ազատութիւն։ Այժմ մնում էր միայն Հայ Վաճառականական Ընկերութեան յեղափոխութիւնը։*

Այդ ընկերութիւնը հետամուտ գտնուեցաւ այդ գործումը եւ 1666 թ․ փետրուար 21-ին Աստրախան ուղարկեց երկուսին՝ Ստեփան Ռոմանովի որդի Ռոմադամեանին եւ Գրիգոր Մատթէոսի որդի Լուսիկեանցին (Ռուսական վաւերաթղթերում վերջինս մի երկու անգամ անուանուած է Լուսիկով, իսկ մնացած տեղերում Գուսիկով. Թէպէտ հայերէն կոնդակում Յուսիկեան է գրուած, սակայն մենք աւելի ճիշտ համարեցինք Լուսիկեան, այնպէս էլ կը գործածենք)։ Սրանք 1667-ին Մոսկուա հասան եւ ժամանակի օրէնքի համաձայն Դեսպանական Ատեանի հետ յարաբերութիւն սկսեցին։ Այն ժամանակ Ռուսաստանում Դեսպանական Ատեանը նոյն գործ էր կատարում, ինչ որ այժմ Արտաքին գործոց նախարարութիւնը։ Ալեքսէյ Միխայլովիչ թագաւորը սիրով ընդունեց Հայ վաճառականական Ընկերութեան ներկայացուցիչներին եւ համաձայնուեցաւ Հրովարտակներով որոշել ամենայն տեսակ իրաւունքներ ու արտօնութիւններ։ 1667 ապրիլ 22-ին արդէն հրատարակուել էին առեւտրի վերաբերեալ օրէնքներն, որոնց 77-րդ յօդուածում ասուած էր. «Այն օտար երկրացիները, որոնք գալիս են Անդրծովեան երկիրներից, ինչպէս Ղզլբաշները, Հնդիկները, Բուխարացիները, Հայերը, Ղալմուխները, Ջերքէզները, Աստրախանի բնակիչները եւ այլն երկրացիներն իրաւունք են ստանում իրենց ապրանքները բերել Մոսկուա եւ այլ քաղաքներ. այս օտարների ծախած ապրանքից բոլորից մէկ գրիվնա (10 կոպէկ) մաքս վճարելով, իսկ եթէ ապրանքը կը ծախեն Աստրախանում, այն ժամանակ բոլորից 10 գինից». (որքան ստուգեցինք, գրիվնան այն ժամանակ հաւասար էր 1[2 կոպէկի, ուրեմն 5 կ.)։ Մի եւ նոյն օրէնսգրութեան 99-րդ յօդուածում ասուած էր. «Երբ Ղզլբաշները, Հայերը, Բոյները մեր սահմանակից քաղաքներ կը գան, իրենց ապրանքը խուզարկել՝ զննել բոլոր արկղերը, հակերը, կապոցները, զննել մարգարիտներն ու այլ տեսակ ակները, տեսնել որպէս զի ոչ մի բան թագցրած չը լինեն, իսկ առանց ապրանքն էլ նրանից հետ փոխելիս՝ զգոյշ լինել» (Արձանագր. հատ. Ա. էջ 3)։

Ուրեմն օրէնքի գոյութիւնն արդէն Հայերին իրաւունք էր տալիս ազատ վաճառականութիւն անելու, սակայն Հայերն աւելի զգոյշ գտնըւեցան եւ որոշեցին վաւերաթուղթ ձեռք բերել, որպէս զի ամեն կերպ ապահովուած լինէին։ Ռուսիոյ հետ մշտապէս յարաբերութիւն ունենալու համար նրանց հարկաւոր էր իրենց ընկերութեան կողմից ներկայացուցիչ ունենալ Մոսկուայում եւ այդ պատճառով իբրեւ գործակալ (ագենտ) վարձեցին Մոսկուական պետութեան յայտնի՝ Անգղիացի Թոմաս Թոմասի որդի. Բրէյն-ին եւ բոլորուց 2 կոպէկ որոշեցին 'ի վարտուր այդ պաշտօնի։ 1667 մայիս 31-ին կնքուեցաւ պայմանն, որը ազատ փոխադրութեամբ մէջ ենք բերում.

«Տաճիկ երկրի եւ Սպահան քաղաքի հայ վաճառականներիս. ինձ՝

Սանփան Մովսիսի որդի Ռոմադամեանին եւ ինձ՝ Գրիգոր Մատթէի որդի Լուսիկեանին ներկայ 7175 (=1667) թուականին համայն Ռուսիոյ Մեծ Արքան՝ Մեծ, Փոքր եւ Սպիտակ Ռուսիոյ թագաւոր եւ Մեծ իշխան Ալեքսէյ Միխայլովիչ Ինքնակալը շնորհի արժանացրեց, թոյլ տալով մեզ Հայ Վաճառականական Ընկերութեան եւ մեր գործակատարներին գալ Անդրծովեան երկիրներից, բերել մետաքս, արդաշ եւ այլ պարսկական ապրանքներ եւ առեւտուր անել Մեծ Արքայի Մոսկուա, Աստրախան, Արխանգել եւ այլ սահմանաքաղաքներում։ Մեծ Թագաւորը հրամայեց, որ մեր ապրանքները ում ել ծախենք՝ ռուսաց թէ գերմանացւոց եւ փոխարէն ինչ որ վերցնենք՝ ռուսական թէ գերմանական ապրանք, ոսկի թէ եֆիմկա (հոլանդական դրամ), պարտաւորում ենք իր երկրի միջով մեր երկիր վերադառնալ։

Մի եւ նոյն ժամանակ Մեծ Արքան մեր խնդրի համաձայն իրաւունք տուեց մեզ, որ մեր ընկերութեան կողմից Մոսկուայում գործակալ լինի Մոսկովաբնակ Թոմաս Թամասի որդի Բրէյն անգլիացին։ Այս իրաւունքի համաձայն մենք՝ Սանփան եւ Գրիգոր՝ մեր ամբողջ ընկերութեան կողմից ներկայ 7157 թ. մայիս 31 ին արքայանիստ Մոսկուա քաղաքում պայմանաւորուեցանք Թ. Բրէյնի հետ, որ մինչեւ Մեծ Արքայի կամք կը լինի նա Մոսկուայում մեր գործակալ լինի, իսկ մենք՝ Սանփան եւ Գրիգոր վաճառականներս՝ վերադառնալով Իսպահան, պէտք է յայտնենք մեր Թագաւորին այդ պայմանի մասին եւ խնդրենք նորին Արքայական Մեծութիւնից, որ խնդրողական թուղթ ուղարկէ Ն. Ա. Մեծ. Ռուսաց Թագաւորին, որպէս զի վերջինս իր ողորմածութեան արժանացնէ Թոմասին, երբ Թոմասը մեր կողմից որ եւ է խնդիր կ'ունենայ։ Պէտք է աշխատենք, որ այս թուղթը, որքան կարելի է շուտ, հասցնենք Մոսկուա Թոմասին։ Թոմասը հարկ եղած դէպքումը մեր բոլոր գործերի համար պէտք է իրեն հաւատարիմ մարդկանց ուղարկէ Աստրախան, Նովգորոդ, Արխանգել եւ այլ քաղաքներ եւ մեր առեւտրական-արդիւնաբերական բոլոր գործերի ու խնդիրների համար անխարդախաբար եւ հաւատարմութեամբ կարգադրութիւններ անէ եւ հոգ տանէ ինչպէս Մեծ Արքայի առաջ, այնպէս էլ Ն. Արք. Մեծ. Բոյարինի (իշխան), Խորհրդարանի եւ այլ պաշտօնէից մօտ։ Հարկ եղած դէպքումը նա, մեր գործերի դրութեան մասին, պէտք է տեղեկութիւն տայ մեզ եւ ինչ կարգադրութիւն էլ մենք կանենք լինի դա մեր ներկայութեամբ թէ առանց մեզ, պէտք է ի կատար ածէ։ Եթէ պատահի, որ կարիք զգացուի մեզ նամակ գրելու, այն ժամանակ Թոմասը պէտք է ուղարկէ նամակը մեզ հէնց որ ճանապարհորդ կը պատահի։ Համաձայն այս պայմանաթղթի, մենք եւ մեր Ընկերութեան բոլոր գործակատարները, որոնք ապրանք կը բերեն, պարտաւորում ենք տեղական մաքսագների համաձայն Աստրախանում վճարել Թոմասին րուբլուց մի դենգա։ Եթէ ապ-

րանքը կը ծախենք Աստրախանում, պարտաւորւում ենք ծախուած ապրանքի ընդհանուր գումարից վճարել դարձեալ րուբլուց մի դենգա։ Եթէ մետաքս ծախենք Մոսկուայում Աստրախանի մաքսագնից թանկ, այս դէպքումն էլ ընդհանուր վաճառման գումարից վճարենք Թոմասին դարձեալ մի դենգա։ Իսկ եթէ Մոսկուայումն էլ չը ծախենք մետաքս եւ այլ ապրանքներ եւ տանենք Նովգորոդ, Արխանգել եւ կամ այլ սահմանաքաղաքներ եւ այնտեղ ծախենք, պարտաւորւում ենք րուբլուց մի դենգա վճարել։ Եթէ այնպէս պատահի, որ մետաքսն ու միւս ապրանքներն ուղարկենք ծովից միւս կողմ եղած երկիրներումը վաճառելու, դարձեալ պարտաւոր ենք րուբլուց մի դենգա վճարել տեղական մաքսագների համաձայն։ Այսպիսով Թոմասին 'ի վարձատրութիւն գործակալութեան մենք պարտաւոր չենք րուբլուց 1 դենգայից աւելի վճարելու։ Եթէ մենք Թոմասին մետաքս եւ կամ այլ ապրանք ղրկենք Մոսկովեան պետութեան քաղաքներում վաճառելու. այդ դէպքում վաճառումից գոյացած գումարից րուբլուց մի գրօշ (2 կոպէկ) իրեն։ Եթէ Թոմասը մեր ապրանքը ծախէ եւ ստացած գումարով մեզ համար ռուսական կամ գերմանական ապրանք գնէ, եւ կամ թէ մեր ապրանքը նրանց ապրանքի հետ փոխէ, այս դէպքում մենք պարտաւոր ենք րուբլուց մի ուրիշ գրօշ էլ տալ։ Իսկ ինչ որ Թոմասը ծախս կունենայ, կամ խնդրագիրների համար տուրքեր կը վճարէ, կամ թէ մեր որ եւ է գործի համար Մեծ արքայից հրովարտակ ստանալու հոգ կը տանէ, այս բոլորը՝ լինի մեր ներկայութեամբ թէ առանց մեզ միայն մեր գրութեան համաձայն, մեր պարտքն է վճարել Թոմասի ներկայացրած հաշուի համաձայն։ Եթէ այնպէս պատահից, որ Թովմասին վճարելի գումարը չ'ունենանք, այն ժամանակ դրամի փոխարէն պէտք է ապրանք տանք՝ մետաքս, արդաչ եւայլն։ Այս վճարումը, նայած թէ որտեղ կը լինի, Աստրախանում, Մոսկուայում, Նովգորոդում, Արխանգելում եւ կամ այլ քաղաքում, պէտք է հաշուենք տեղական գներով եւ բացի այս, պէտք է մաքսատան գների համաձայն րուբլուց մի դենգա իրեն վճարենք։ Իսկ եթէ պատահի, որ Մեծ Արքայի Ռուսական պետութեան մէջ, բացի Թոմասի եւ նրա գործակատարների, ուրիշ մէկը գործակալութեան վարձ պահանջէ, Թոմասը պարտաւորւում է մեզ դրանից ազատ դարձուցանել։ Այս բոլորին վկայենք. Իվան Բօժենով, Ուլեան Բօրիսով, Ֆիլիպ Կրբիլով, Իվան Պրօկլիեւ, Մելենտիյ Իվանով։ Պայմանագիրը գրեց Ուլանովսկայա հրապարակի դատարանական պաշտօնեայ Զօտկա Ծեկանով»։ (Արձանագր. հտ. Ա. էջ 142-145).

Նոյն օրը, այն է 1667 (=7175) մայիս 31-ին, Ալէքսէյ Միխայլովիչ Թագաւորը այդ առեւտրական դաշնագրի հրովարտակը շնորհեց, որ հետեւեալն է.

«Աստուծոյ Ամենակալ ողորմութեամբ, Նրա հանճարեղ Աջով պատկ-

ուած ու պաշտպանուող եւ Նրա կենարար եւ կենդանատու Հոգւով կառավարուող ամենաողորմած եւ ամենաերջանիկ Մեծ Արքայ եւ Թագաւոր եւ ամբողջ Մեծ, Փոքր եւ Սպիտակ Ռուսիոյ Մեծ իշխան Ալէքսէյ Միխայլովիչ Ինքնակալից՝ Նորին Լուսափայլ Արքայական Մեծութեան եւ Բարձր Արքունի ու Պետական Դեսպանական գործոց իշխան եւ տեղակալ Շատսկոյ Աֆօնասիի Լավրենտեւիչ Օրդին-Նաշչօկին եւ Խորհրդարանի ատենադպիրներ Գերասիմ Սիմէօնով՝ որդի Դոխտուրովի, Լուկիան Տիմոֆէեւ՝ որդի Գոլէասովի եւ ատենադպիր Եֆիմ Բոգդանով՝ որդի Իւրեւի. Համաձայն (տիտղոս Պարսից Շահի) Նորին Շահ Արքայական Մեծութեան Պարսից հպատակ Հայերի՝ Ստեփան Ռոմադամեանի, Գրիգոր Լուսիկեանի եւ ընկերների խնդրի, նրանց հետ հետեւեալ պայման կնքեցինք, որ նրանք Ռուսներին եւ Գերմանացիներին վաճառելու համար Մեծ Ռուսիա մետաքս եւ այլ ապրանքներ բերեն, իսկ ինչ որ մինչեւ այժմ բերել են զանազան մետաքսեր ճանապարհներով՝ իրաւունք ենք տալիս ուրիշ պետութեանց մէջ ծախելու, սակայն այսուհետեւ արգելում ենք մի եւ նոյն ճանապարհներով ապրանք բերելու: Այսուհետեւ նրանք իրաւունք չունեն այլ պետութեան վաճառականների հետ որ եւ է վաճառականական գործ կապելու, այլ տարւայ ընթացքում ինչքան որ Պարսից երկրում բոլոր արդիւնաբերողների մօտ մետաքս կը ստացուի. պէտք է լրիւ տարէց տարի բերեն Մեծ Ռուսիոյ սահմանաքաղաքները կամ ցամաքով Թէրէքի ափերով Աստրախան եւ կամ ծովով մի եւ նոյն քաղաք. մետաքսի եւ այլ ապրանքների արտահանման համար պէտք է ղեկավարուել հետեւեալ օրէնքներով.

«Աշխարհի ստեղծագործութեան 7175 թ., տայ աստուած եւ այսուհետեւ, որքան կարելի է վերոյիշեալ բազմաթիւ ապրանքներով Պարսից երկրից պէտք է Աստրախան գան եւ ներկայանան նոյն ժամանակ Աստրախանում գտնուող Նորին Արքայական Մեծութեան Բոյարներին եւ Վօեվօդաներին, Հէնց որ ապրանքաբեր գործակատարը կը ներկայանայ, հրամայում ենք անմիջապէս ընդունել եւ զննել մետաքսն ու միւս ապրանք. իմանալ բերած ապրանքի որքանութիւնը, ցուցակագրել, հաշուի առնել եւ այս պայմանագրի համաձայն հետեւեալ մաքս վերցնել. հում մետաքսից 20 ռուբլուց իսկ արդաշից 16 ռուբլուց ռուբլու վրայ 10 դենգա: Իսկ եթէ Աստրախանում թանկ գնով կը ծախեն ինչպէս իրենց կամքն է, ամբողջ արժողութիւնից ռուբլուն 10 դենգա վերցնել իբրեւ մաքս, իսկ միւս ապրանքից էլ տեղական արժէքի կամ փոխելու գնի համաձայն ռուբլուց դարձեալ 10 դենգա. իսկ ինչ որ Աստրախանում չեն ծախի եւ սայլերով Մոսկուա կը տանեն. փութից մի ռուբլի ճանապարհածախս վերցնել, միայն ինչ որ մանր մունր ճանապարհորդական բաներ կունենան, ինչպէս կարած շորեր եւ ուտեստ, որը որոշում ենք 100 փութից միայն 10 փութ; առանց ճանապարհածախսի ու առանց մաքս

վերցնելու տանել մինչեւ Մոսկուա։ Այս հաշուով շատ ծխախոտ չը պէտք է լինի, այլ մարդագլուխ 20 ֆունտ եւ այն էլ իրեն համար եւ ոչ թէ ծախելու։ Ցայտարարութեան եւ ցուցակագրի համաձայն պէտք է բոլոր ապրանքը յայտնի լինի եւ ոչ մի բան անգամ չը լինի թագցրած, որովհետեւ միայն ճշմարտասէր եւ անխարդախ մարդիկ պէտք է զբաղուին առեւտուրով։ Եթէ պատահի, որ նրանք ճանապարհածախս ու մաքս վճարելու համար Աստրախանում փող չունենան, այդ դէպքում վերցնել ամբողջ ապրանքի 25-ից մի մաս իսկ իբրեւ ճանապարհածախս տեղական արժէքի համաձայն մետաքս եւ այլ ապրանք վերցնել։ Երբոր նրանք կը հասնին արքայանիստ Մոսկուա քաղաք, պէտք է ներկայանան Բարձր Արքունի գործոց Դեսպանական Ատենի, եւ այն ժամանակ կը հրամայուի գործակալին Աստրախանի նման զննել, ցուցակներով հաշուել, որպէս զի ամեն բանը աչքի առաջ լինի, եւ ոչ թէ թագնուած եւ վերցնել Մեծ Արքայի գանձարանի օգտին որոշեալ տուրք ապրանքի արժէքի համաձայն։ Իսկ եթէ Մոսկուայում չեն ծախի բերած ապրանքը, այդ դէպքում հում մետաքսը 30 ռուբլի հաշուելով իսկ արդաշը փութը 26 ռուբլի, ռուբլուց 10 դենգա վերցնել, իսկ միւս ապրանքից դարձեալ ռուբլու հաշուով տեղական արժէքի համաձայն. որովհետեւ իրենց ապրանքը Մոսկուայի արժէքից թանկ գնով կը ծախեն, եւ այդ ապրանքից ճանապարհածախս վերցնել Մոսկուայի արժէքի համաձայն ռուբլուց 10 դենգա։ Իսկ ինչ որ Մոսկուայում չեն ծախի եւ կը տանեն սահմանակից քաղաքները՝ Մեծ Նովգորոդ, Սմոլենսկ, Արխանգելեան քաղաք, այդ հում մետաքսից եւ այլ ապրանքից, որոնք ուրիշ երկիրներում էլ պէտքական են, պէտք է Մոսկուայում փութին 9 ալտին (ալտին=3 կ.) ճանապարհածախս վճարեն. եթէ փող չունենան, այն ժամանակ նրանք պարտաւորւում են վճարել մաքս ապրանքի 20-րդ մասը, իսկ ճանապարհածախս էլ մետաքսով եւ այլ ապրանքով Մոսկուայի արժէքի համաձայն։ Եթէ վերոյիշեալ սահմանամերձ քաղաքներում էլ չեն ծախի իրենց բերած ապրանքը եւ կ'ուզեն տանել անդրծովեան երկիրները. իրաւունք ենք տալիս տանելու, միայն մաքս պէտք է տան, մետաքսը 40 ռուբլի իսկ արդաշի փութը 36 ռուբլի հաշուելով, ռուբլուց 10 դենգա. եթէ փող չեն ունենայ — ապրանքի 20-րդ մասը։ Անդրծովեան երկրներում ծախելով ապրանքը եւ գնելով այնտեղի ապրանք, այդ ապրանքով ոսկով եւ եֆիմկաներով պէտք է վերադառնան Մեծ Արքայի սահմանաքաղաքներ եւ ուրիշ պետութեան միջով իրաւունք չունեն Պարսից երկիր վերադառնալու, որպէս զի ապրանքի մաքսը նրանից չը վճարեն։ Այդ ապրանքից, որը կը թոյլատրուի Մոսկուայից դուրս տանել, վերցնել արժէքի համաձայն ռուբլուց 10 դենգա։ Իսկ ինչ վերաբերւում է փոխուող ապրանքներին, սահմանամերձ քաղաքներից մինչեւ Մոսկուա եւ Մոսկուայից մինչեւ այդ քաղաքները ճանապարհածախս

վերցնել փութին մի պօլտինա ( 50 կ. ) · ուտելիքն էլ թոյլատրւում է ձրիաբար 100-ին 5 փութ ։ Այս 5 փութի հաշւում երբէք ուրիշ ապրանք չը տանել , այլ միմիայն խստութեամբ պարսկական եւ գերմանական ապրանքները փոխել տեղականի հետ ըստ արժողութեան · Բացի մարթեղէնից եթէ ստարներից վերցրած կը լինեն նաեւ մաքուր՝ 14 հատ մի փունտ քաշող եփիմկա արծաթ եւ մաքուր ոսկեդրամ եւ անցնելիս այդ դրամներով ապրանք կը գնեն , այդպիսի ապրանքից մաքսը բաշխւում է Հայերին իրենց հոգացողութեան պատճառով , որովհետեւ Պարսկաստանից Մոսկովեան պետութիւն ապրանք են բերում եւ որ գլխաւորն է , հարկ է , որ իրենց ապրանքը այդ դրամի ծախեն , իսկ ձեռք բերած դըրամով էլ ռուսական ապրանք գնեն ։ Այն բոլոր ապրանքի համար , որ նրանք կը գնեն արտասահմանում եւ Մոսկովեան պետութեան միջով իրենց երկիրը կը տանեն , պէտք է մաքս վճարեն 2 ալտին եւ 2 դենգա ռուբլուց եւ այդ էլ մի միայն Մոսկուայում եւ ոչ թէ ուրիշ քաղաքներում ։ Իսկ ինչ որ բացի գնած ռուսական եւ գերմանական ապրանքից նրանից մօտ ոսկեդրամ եւ եֆիմկա կը լինի եւ նրանք կը տանեն Պարսկաստան , դրանից էլ ռուբլի հաշւի մաքս վերցնել՝ ոսկեդրամը հաշւելով ռուբլի , իսկ եֆիմկան պօլտինա , մաքսն էլ ամենաքիչը՝ ռուբլուց ալտին , որ Պարսկաստանում այդ ոսկեդրամով եւ եֆիմկաներով մետաքս գնեն եւ տեղական արհեստաւորներին մեծ պատուէրներ տան , գործը ընդլայնեն որպէս զի Մոսկովեան պետութիւն շատ եւ լաւագոյն ապրանք բերեն ։ Երբ Մոսկուայից Աստրախան կը գնան՝ ճանապարհածախս փութից 50 կ. վերցնել . իսկ ուտեստ էլ ձրիաբար 100-ին 10 փութ · եւ մի եւ նոյն հաշւում էլ Մոսկուայից մարդագլուխ վերցընել 5 ական վեդրօ գինի · Եւ երբոր արդէն Աստրախան կը հասնեն , այնտեղ էլ մաքսատեղը դարձեալ կը նայէ կը գնէ բոլորը եւ նայած թէ իրենք Հայերն ինչպէս կ'ուզեն , իրենց ապրանքով , ցամաքով կամ ծովով , ճանապարհ կընկնեն դէպի հայրենիք , այստեղ չը պէտք է ճանապարհածախս վերցնել ։ Ինչպէս նրանց գալուստը նոյնպէս եւ ծովով՝ լաստերով կամ ցամաքով՝ սայլերով ապրանք բերելը Պարսկաստանից Աստրախան-Մոսկուա եւ սահմանաքաղաքները , կամ թէ սահմանաքաղաքներից Մոսկուա-Աստրախան , Նորին Արքայական Մեծութեան հրամանով պէտք է ապահովւած լինի աւազակներից եւ ամէն տեսակ յարձակումներից , որի համար պէտք է վաճառականներին զինուած մարդիկ ուղեկցեն ։ Եթէ պատահի , որ կամ մեծ փոթորկից եւ կամ ապրանքին ուղեկցող ծառայողների անհոգութիւնից ապրանքը ծովը թափուի , այդ դէպքումն էլ ճշմարտութեամբ քննելուց յետոյ ողորմածաբար վերաբերուել ։ Այս էլ յայտնի լինի , որ բերուելիք մետաքսի եւ այլ ապրանքի հետ , պէտք է նրանք բերեն Մոսկովեան եւ Գերմանական պետութեանց

մէջ ծախելու համար ուղտի բուրդը, որից նրանք իրենց երկրում այլ եւ այլ գործուածքներ են պատրաստում։

Պարսկական ապրանքները ընդունելու համար, ինչպէս նաեւ որպէս վերակացու եւ գործակալ նրանց ընկերութեան, որի պարագլուխն է համաձայն Քրիստոսի ս. Աւետարանի արդարութեամբ հոգալ վաճառման գըների եւ առուտուր ու օտար երկրացոց հետ ապրանքափոխութեան համար՝ ըստ կնքուած պայմանագրի, հաստատում է Մոսկուայի բազմաժամանակեայ բնակիչ անգղիացի Թոմաս Թոմասի որդի Բրէյնը, որը իր այդ ծառայութեան համար արժանանում է Նորին Արքայական Մեծութեան ողորմած հրովարտակին։ Ի սրտիտուր այն բանի, որ նա պէտք է նրանց առեւտրական գործերով բնակուի Մոսկուայում եւ կամ թէ գնայ ուր որ հարկն է եւ Աստրախանումն էլ գործակատար ունենայ. նա պէտք է ըստանայ իրեն ծախսերի համար հարկաւոր վարձատրութիւն, որը որոշուած է նրանց միջեւ եղած պայմանագրի մէջ։ Որպէս զի Պարսկաստանից Մեծ Ռուսիա ապրանք բերելը տեւական լինի՝ տարէց տարի աւելի եւ աւելի ընդլայնուի եւ որպէս զի ոչ մի ժամանակ որ եւ է արգելք կամ վիրաւորանք ու զրկողութիւն չը լինի, համաձայն Հայերի խնդրի յանուն Նորին Արքայական Մեծութեան եղբայր Աբաս Շահեան Մեծութեան ամենաողորմելի հրովարտակի մէջ մանրամասնօրէն գրուած է եւ Ստեփանի ու Գրիգորի հետ ուղարկուած է։ Այդ պատճառով էլ Ստեփանին եւ Գրիգորին եւ նրանց ժառանգներին տրւում է այս հաստատուն եւ տեւողական հրովարտակը»։ (Արձ. Ա. 146-152)։

Այսպիսով առեւտրական դաշն արդէն կապուած էր, պայմանները որոշուած եւ Հայ Ընկերութեան ներկայացուցիչները տանելով իրենց հետ Շահի անուանով եւ իրենց տրուած հրովարտակները պէտք է սկզբին Ռուսիա բերել հում մետաքս, արդաչ, ուղտի բուրդ եւ այլ ապրանքներ եւ պէտք է առեւտուր անէին։ 1667 օգոստոս 31 ին Թոմաս Բրէյնին տրուեցաւ հաստատութեան հրովարտակ, բայց նախ քան այդ հըրովարտակը, նա պետական օրէնքի համաձայն երդուեցաւ հաւատարմութեամբ ծառայել ինչպէս պետութեան այնպէս էլ իրեն հաւատացած ընկերութեան։

---

## ԳԼՈՒԽ Զ.

1667 թ. յիրաւի սկսուեցաւ կանոնաւոր վաճառականութիւն։ Գործի սկիզբը դնելու համար Լուսիկեանի եւ Բոմոզամեանի հետ 40 վաճառական էր եկած, որոնք տեղեկանալով իրենց իրաւունքների մասին, անմիջապէս սկսեցին առեւտուրը։ Պարսից Սիւլէյման Շահը՝ ստանալով Ալէքսէյ Միխայլովիչի հրովարտակը, համաձայնուեցաւ հայ վաճառականների հետ, ինքն էլ իր կողմից պայմանագիրներ հաստատեց եւ 1669 ( 4080 ) թ. յանուն Հայ Առեւտրական Ընկերութեան ներկայացուցիչ Լուսիկեան ու Բոմոզամեան հոյերի եւ Ալէքսէյ Միխայլովիչին գրկած հրովարտակներով որոշեց, որ նրանք ազատ առեւտուր անեն եւ ճանապարհին էլ ոչ մի արգելք չը լինի։

Բայց այս էլ երկար չը տեւեց, որովհետեւ քաղաքական հարցերն այնպիսի լուրջ կերպարանք էին ստացել, որ Ուկրայինայում մեծ ապստամբութիւն բռնկուեցաւ եւ «օդի մէջ եղած թռչուններին հրաման տուող» Ստենկա Ռազին յայտնի աւազակապետը սկսեց իր հունձը։ 1667 թ. յունվար 30-ին Սմոլենսկի նահանգի Անդրուսովա գիւղում Ռուսիայի ներկայացուցիչ Օրդին-Նաշչօկինը Լեհաստանի Գլեբովիչ, Զավիշա եւ Բրժօստովսկի ներկայացուցիչների հետ 13 ա. եւ 6 ամսուայ ժամանակամիջոցի դաշն կապեց, որի հիման վրայ Կիեւ, Սմոլէնսկ եւ ամբողջ Սէվէրսկայա երկիրը Ռուսաստանին մնաց, (Զինուորական հանրագիտակ, Ա. էջ 412), իսկ Լեհաստանին 'ի միջի այլոց արուեցաւ եւ Ուկրայինայ մի մասը, սակայն Զապորոժեան հեծելազօրքը չը կամեցաւ հնազանդուել Լեհաստանին եւ ծագեց ապստամբութիւն։ Պետր Դորոշենկօն, որ Անդր-Դնեպրեան կազակներից էր եւ գլխաւոր էր, միաժամանակ զինուեցաւ Ռուսիոյ եւ Լեհաստանի դէմ եւ Զապորոժցոց ու Ղրիմի Թաթարներից կազմած զօրքով սկսեց յարձակումներ գործել եւ մի քանի ամրութիւնների տիրեց։ Բայց այս ոչինչ, մի աւելի սարսափեցուցիչ անձնաւորութիւն էլ երեւեցաւ, որի անունը լսելիս ռուս գիւղացին թողնում էր իր տունը, տեղը եւ փախչում ինքն էլ չը գիտենալով թէ ուր, — դա Ստենկա Ռազինն էր։

Ռազինը Ջերկասկա քաղաքիցն էր եւ մի անվախ ու յանդուգն կա-
զակ։ Տեսնելով որ իրեն չի յաջողւում կազակների զօրապլուխ դառնալը, նա իր յառաջնայեղց ընկերների հետ 1667-ին ամրացաւ Կամըրշեւկայում եւ Վօլգայի վրայ երթեւեկող, գլխաւորապէս Աստրախան ու Կովկաս գնացող նաւերի վրայ սարսափ տարածեց։ Նրա յարձակումները մեծ վընաս տուեցին հայ վաճառականներին, որոնց ճանապարհներից գլխաւորը Վօլգա գետն էր։ Աստրախանի զօրագլուխը (Վօեվօդա)՝ իշխ. Խիլկօվը նրա դէմ մի գունդ ուղարկեց, որոնց Ռազինը Եայիկայի գետաբերանում սարսափելի ջարդ տուեց։ 1668-ին նա իր գործողութիւնները կասպից ծովը փոխադրեց, աւարի մատնեց Րեաշչ, Բաքու, Աստրաբադ եւ ուրիշ ծովեզրեայ քաղաքները, կողոպտեց բազմաթիւ առեւտրական ու պարսկական առեւտրականները, բայց Պարսից նաւատորմիղի հետ ունեցած ընդհարման ժամանակ՝ 1669-ին մեծ կորուստ ունեցաւ եւ վերադարձաւ Դոնի ափերում նոր գունդ կազմելու, որպէսզի նոր ոյժով դուրս գնայ ծովում եւ Վօլգայի վրայ ձկնորսութիւն անելու։ Հայ վաճառականները սրդողած եղան բողոքելու. Դեսպանութեան Աստնեփն եւ յետոյ էլ Շահին, որը գիտեց Ալեքսէյ Միխայլովիչին։ Ալեքսէյ Միխայլովիչը վճռեց ամենայն խստութեամբ պատժել Դոնացիներին, այնպէս ներեց որովհետեւ նրանք զղջացին եւ խոստացան այլ եւս չանել։ Բայց Ռազինին հրաման ուղարկուեցաւ, որով յայտնուեցաւ նրան, որ եթէ չի դադարեցնի աւազակութիւնն ու չի վերադառնայ Դոնի ափերը մահուան պատժի կ'ենթարկուի։ Ռազինը սրդողած եղաւ կատաղելու այս հրամանը եւ Կաչալնիցկի քաղաքում բնակութիւն հաստատելով մի պատգամաւորութիւն ուղարկեց Մոսկուա եւ առաջարկեց իր ծառայութիւնները։ Թագաւորը յանձն առնել չը կամեցաւ, ու միայն թէ պատգամաւորների միջոցով նրա հետ յարաբերութիւն ունէր։ Կատաղեց Ռազինը, հաւաքեց իր վաղեմի ընկերներին եւ 1670-ին յարձակուեցաւ Տարիկի վըրայ, կողոպտեց վրանաբնակ Թաթարներին եւ Ղալմուխներին, նուաճեց Ցարիցինը, Չէօրնի-Եարը եւ յունիսի 8-ին Աստրախանից 8 վերստ հեռու վրաններ խփեց եւ բանակեց եւ սկսեց դրաւել շրջակայքում եղած ամրոխին, որով կարողացաւ մեծացնել իր զօրքի թիւը։ Քաղաքի Վօեվօդա իշխ. Պրոզօրովսկին սկսեց հանգստացնել սարսափահար եղած բընակիչներին, այնպէս չատերը, մանաւանդ Պարսկաստանից հայ եւ վաճառականները մասամբ կարողացան փախչել ծովով, մասամբ էլ ընկան նրա թռուցիկ աւազակախմբերի ու ծովաւէնների ձեռքը։ Քաղաքում մընացին բնիկները եւ 'ի միջի այլոց արքէն բազմացած պատկառելի հայ գաղութը։ Սարսափելի էր յունիսի 21-ի գիշերն եղած յարձակումը։ Իշխ. Պրոզօրովսկին փոքրիկ գնդով սկսեց դիմադրել, այնպէս տեսնելով որ յաղթութիւնը Ռազինի կողմն է, նա նահանջեց եւ մօտ 600 հոգու հետ եկեղեցի, ուր ընկաւ ինքը իր զօրքի ու բնակիչների հետ։

Ռազինը իր մօտ հաւաքել տուեց հայ, պարսիկ եւ գերմանացի վաճառականներին, խլեց ստացուածքը եւ հրամայեց սարսեցուցիչ տանջանքներով սպանել։ Բացի այս նա աւարի մատնեց եկեղեցիները, կողոպտեց վաճառատները, գանձարանը, այրեց նաւահանգստում եղած նաւերը, որոնց մէջ էր եւ Հոլանտացի արհեստաւորների շինած Օրեօլ նաւը։ Ով որ կարողացաւ ազատուել, սկսեցին փախչել եւ քաղաքը մնաց Ռազինի ձեռքին։ Փախչողների մէջն էին նաեւ Ջուղայեցի Աստուածատուր Սայթինեան եւ Ստեփաննոս Մրչեակեան վաճառականները, որոնք հասան Մոսկուա եւ բողոքեցին Դեսպանութեան Ատենին, եւ սկսեցին առեւտրական հարցերը բոլորովին վերջացնել եւ խնդրեցին Ատենից պաշտպանութիւն։ Դեսպանական Ատենը լութեան տուեց այս բոլորը եւ հայ վաճառականներն էլ վերադառնալով իրենց հայրենիք, դադարեցրին Ռուսաստանի հետ ունեցած յարաբերութիւնները. սակայն այդ դադարը երկար չը տեւեց։

Ռազինը շարունակեց իր ճանապարհը դէպի Ռուսիա։ Ամբոխը եւ գլխաւորապէս ազնուականները իրենց հարազատ թագաւորի դէմ ելան՝ զինուեցան։ Այժմ սարսափը ընդհանուր էր։ Ռազինի կուսակիցների թիւը 200,000-ի հասաւ եւ լուր տարածուեցաւ որ նա գնում է Մոսկուայի վրայ։ Այս ապստամբութիւնն Մոսկուայի նահանգումն էլ արձագանք գտաւ։ Թագաւորը տեսնելով, որ կոյր ամբոխը հետեւում է այդ աւազակին, Միլոսլաւսկեան մեծ զօրքով ուղարկեց նրա դէմ եւ Ռազինը Սիմբիրսկ քաղաքի մօտ մեծ պարտութիւն կրելով՝ փախաւ Սամարա։ Մի քանի զօրապետներ գնդերով կարողացան խաղաղացնել ամբոխին, իսկ Միլոսլաւսկին սկսեց հալածել Ռազինին, որը իրեն վերջին ապաստան ընտրեց Դօնի ափերը. սակայն այդ տեղ էլ մեծ ծեծ կերաւ եւ գերի բռնուելով 1671 ապրիլ 24-ին Մոսկուա զրկուեցաւ, որտեղ Կիտայ-Գորոդի հրապարակում անուամած արին։ (Զինուոր. հանրագ. ԺԱ. էջ 62-64)։ Միլոսլաւսկին յարձակուեցաւ Աստրախանի վրայ, դուրս քշեց Ռազինից նշանակուած ատաման Ուս Ձէրտօրօրոգովին եւ քաղաքը նորից խաղաղացաւ եւ շունչ առաւ։

Աստրախանի վերականգնման եւ Ռազինի պարտութեան լուրը հասաւ հայ վաճառականներին, սակայն այդքանով չբաւականացան նրանք, որովհետեւ նրանք կարծում էին, որ ծովահէններից ազատուելը հեշտ բան չէր, մանաւանդ որ միայն Ռազինը չէր, որ կողոպտում էր, այլ նրան հետեւում էին բազմաթիւ խմբեր, ուստի եւ հարկ եղաւ նոր պայմաններ առաջարկելու եւ եթէ դրանք ընդունուէին, այն ժամանակ նըրանք պատրաստ էին նորոգելու իրենց թերի թողած գործը, իսկ եթէ չը յաջողուի, այն ժամանակ հինը կը շարունակուէր եւ Տաճկաստանի վրայով Եւրոպա կ'անցնէին։ Ռուսաց արքունիքն այդպէս չէր մտածում, նա հեշտութեամբ չէր կարող թողնել մետաքսի առեւտուրը։ Ար-

ջայ Զաքար Սուրհանեանը իր Փարնաւուս անունով գործակատարին լատիներէն նամակով Մոսկուա էր ուղարկել 1670 թ. եւ խնդրել ապահովութիւն։ Մինչդեռ Փարնաւուսը գնդերում էր Մոսկուայում, Դեսպանական Ատեանը մի հարց բարձրացրեց՝ իմանալու արդեօք հայ վաճառականների առեւտուրը չէ՞ խանգարում ռուսական արդիւնաբերութեան եւ վաճառականութեան։ Պետական ատեանները զգալի եկամուտ ցոյց տուին, իսկ ռուս վաճառականները միաբերան վկայեցին, որ իրենց առեւտուրը աւելի յաջող է քան թէ նրանցից առաջ։ Այս գանգատներից պատասխանները արքային դրդեցին նորոգել այն մեծ գործը եւ մինչդեռ պատրաստւում էր պատասխանել՝ նոր արտօնագիր տալ, Մոսկուա հասաւ Գրիգոր Լուսիկեանը իբրեւ դեսպան Պարսից Սուլէյման Շահի։

Գ. Լուսիկեանն իր հետ մի քանի յանձնարարական թղթեր էր բերել. Ա) Սուլէյման Շահի նամակը, որով վեհապետը վաճառականութեան ծառայման հաւանութիւն էր տալիս եւ խնդրում, որ վաճառականները ապահովուած լինէին ամեն տեսակ յարձակումներից եւ նրանց ջանքերը պաշտպանէին օրէնքով։ Բ) Հայ վաճառականական Ընկերութեան խնդիրը, որի մէջ յայտնում էին թէ ինչպէս են տանջուել դադարեցնելու առեւտուր եւ թէ գլխաւոր պատճառը Թուրքին աւազակութիւնն էր, ուստի խնդրում էին նորոգել նախկին յարաբերութիւնները եւ որոնց համար էլ խնդրում էին ապահովութիւն։ Գ) Աղուանից Պետրոս կաթողիկոսի կոնդակը, որի մէջ կաթողիկոսը յայտնելով իր ուրախութիւնը, որ այդպիսի առեւտրական յարաբերութիւն էր հաստատուել, մաղթում էր աջողութիւն եւ խնդրում միջոցներ ձեռք առնել, որ այդ գործը յառաջանայ։ Դ) Սուլէյման Շահի հրովարտակը տուած 1669 (4080) թ. որ վերաբերում էր 1667 թ. պայմանագրի եւ որով Շահը համաձայն էր ամեն կերպ նպաստել գործի յաջողութեանը։

Մինչդեռ Լուսիկեանը Դեսպանական Ատենի Վորչագեն եւ տաղանդաւոր արտաքին գործոց Արտեմոն Մատվէեվի հետ յարաբերութեան մէջ էր եւ աշխատում էր վերջացնել նոր արտօնագրի հարցը, Մոսկուա հասաւ Ստեփան Ռոմոդանովսկին, իր հետ բերելով թագաւորից ազատուած հազուագիւտ իրեղէնները, որոնք 'ի միասին տուած 9062 րուբլի էին գնահատուում։ Թագաւորը մեծ համաձայնութեամբ ընդունեց ազատագրած իրերը եւ 1673 փետրուարի 7-ին շնորհեց նոր արտօնագիր Դեսպանական Ատենի միջոցով, որի մէջ գլխաւորապէս մաքսերի հարցն էր արծարծուած։ Մենք այդ արտօնագրից փոխադրութեամբ մէջ ենք բերում գլխաւոր մասը.

«...Ի լրումն Նորին Արքայական Մեծութեան ձեռք շնորհած նախկին հրովարտակի, որ վերաբերում է մետաքսի առեւտրին, իր. եղբայր Նորին Արքայական Մեծութեան Սուլէյման Շահի հպատակ Հայերից ծանար որոշուեցաւ։ Եթէ Վոլգայ գետի վրայ, որ եւ է տեսակ աւազակութիւն

տաճկաքաղաքներ եւ ծովի միւս ափին եղած գերմանական պետութեան երկիրներ տանող ճանապարհները կը փակուին։ Եթէ պատահի, որ ձեր մետաքսն ու այլ պարսկական ապրանք մեր Մեծ Արքայի առեւտրականները չը գնեն. այն ժամանակ թէ մետաքս եւ թէ միւս տեսակ ապրանք կը գնէ Ն. Արք. Մեծ. արքունիք գանձարանը եւ ձեզ կը վճարէ ոսկեդրամ եւ մի եւ նոյն ժամանակ այնպիսի ապրանք, որը ձեզ ձեռնտու կը լինի. մետաքսը կը հաշուի փութը 35 րուբլի, իսկ արդաշը 30 ր., իսկ միւս տեսակ վաճառելի ապրանքի փոխարէն ձեզ կը տրուի ռուսական ապրանք ժամանակի արժողութեան համաձայն եւ ձեռնտու գնով։ Իսկ ինչպէս որ առաջ ձեր Հայոց Ընկերութիւնը Թուրքաց պետութեան եւ գերմանական երկիրների միջով եւ այլ ճանապարհներով մետաքսով եւ ուրիշ ապրանքով գերմանական պետութեան էր գալիս, ձեզ Շահի Մեծութեան հպատակ հայ եւ այլ ազգի վաճառականներից պատուիրուած է այլ եւս այդ ճանապարհներով չը գնալ։ Եւ այլ պետութիւններից հում մետաքս գնելու համար Պարսկաստան օտարազգի առեւտրականներ կը գան, դուք, մետաքսը բացի Ռուսաստան տանել բերելու. նրանց ծախելու իրաւունք չունիք. իսկ միւս տեսակ վաճառքը կարող էք ծախել, որովհետեւ նորին Մեծութիւն Շահը այդ բանի մասին բանաւոր յայտարարութիւն է արել, բացի այդ Գրիգորը խոստում տուեց ինչպէս իրեն համար, այնպէս էլ Հայոց Ընկերութեան կողմից. իսկ օտարականների համար Շահի հրամանի համաձայն տոմսերին պատուէրներ կը տրուին։ Իսկ մաքսը, ինչպէս մինչեւ արքայանիստ Մոսկուա քաղաք եղած տեղերում, նոյնպէս էլ արքայանիստ Մոսկուայում ծախած ապրանքից, կը վերցնուի այնպէս. ինչպէս որ Ն. Արք. Մեծ. Իր ձեզ Հայ Ընկերութեան տուած նախկին ողորմած հրովարտակի մէջ որոշել էր։ Մնացած պայմանները էլ ձեր խնդրի համաձայն Ն. Ա. Մեծութեան հրամանով այժմ վերահաստատուած են եւ որոշուած եւ այս պայմանագրի վրայ խփուած է Մեծ Արքայի պետական կնիքը, որպէս զի այսուհետեւ անխախտ կերպով գործ դնուին բոլոր կէտերը (*) (Արձան. հատ. Ա. էջ 155-157)։

Այս հրովարտակը մեծ ուրախութիւն պատճառեց Գրիգոր Լուսիկեանին եւ Խօջայ Զաքար Սարհատեանցի գործակալ Ստեփան Րոմոզանեանին, եւ երկուսն էլ արձակման իրաւունք ստանալով՝ վերադարձան

---

(*) Այստեղ հարկաւոր է նկատել, որ այս բարձրագոյն տուած հրովարտակները գրուած են հին ռուսական սլաւոնականի հետ խառն լեզուով եւ շատ տեղերը դժուար հասկանալի են. մենք աշխատեցինք փոխադրել այնպէս, որպէս զի մաքի հարազատութիւնը մնայ, իսկ թարգմանել ոչ միայն մեր ուժից վեր է, այլ հարկաւոր է ծանօթանալ ժէ դարու ռուս լեզուի քերականութեանը։

Աստրախանով Պարսկաստան։ Այնուհետեւ սկսուեցաւ համարձակ երթե-
ւեկութիւն եւ վաճառականական գործն հետզհետէ զարգացաւ։ Հայ վա-
ճառականների Մոսկուայի ժողովատեղին Քիթայ գորոդ կոչուած քաղա-
քամասում եղած հիւրատունն էր, որտեղ առաջին անգամ Հայերը առ-
եւտրական տներ բաց արին։ Նրանցից շատերը հետզհետէ բոլորովին
Մոսկուա եւ Աստրախան տեղափոխուեցան, ունենալով սեփական հայ
գործակալներ (ագենտներ), որոնց պաշտօնն այն էր, որ գնում էին այլ
եւ այլ քաղաքներ ապրանքներ ժողովելու համար, որի համար եւ ա-
ռաջուց Դեսպանական Ատենից թոյլտուութիւն եւ անցագիր էր առնում
նրանց։

Վերեւ յիշուած արտօնագրի ստանալուց յետոյ Պարսկաստանից ա-
ռաջին վաճառականը, որ Ռուսաստան եկաւ, դա Նաղուփ Գրիգորեանցն
էր, որ 1674 թ. յունուար 31-ին իր ընկերների հետ միասին Մոս-
կուա հասաւ։ Ն. Գրիգորեանցը մինչեւ նոյն տարուայ յուլիսի 8-ը Մոս-
կուայում մնաց եւ խնդրեց Դեսպանական Ատենից, որ իր բերած մե-
տաքսը արքունի գանձարանը գնէ, որ եւ կատարուեցաւ եւ նա ռուսա-
կան ապրանքով Պարսկաստան վերադարձաւ։ Աչքի առաջ ունենալով որ
Ն. Գրիգորեանցը առաջին եկողն էր, ուստի եւ նա երբ Պարսկաստանից
դուրս էր եկել՝ իր հետ Գրիգոր Լուսիկեանից նամակ էր բերել Դեսպա-
նական Ատենին, իսկ յետոյ եկողներն այլ եւս կարիք չունէին յանձ-
նարարականներով գալու։ 1675 թ. յունուար 4-ից հետզհետէ Մոսկուա
հասան ի միջի այլոց հետեւեալ վաճառականները - Մելքիսէթ Աստուա-
ծատուրեան, Յակոբ Պօղոսեան, որ ամբողջ մի տարի եւ մի ամիս Մոս-
կուայում մնաց, Յակոբ Աւետիքեան, Յակոբ Հախնազարեան, որը ա-
մենքից համարձակ գտնուեցաւ եւ Աստուածատուր Մկրտչեանի հետ 1675
թ. յուլիս 19-ին Արքունի դրան աղերսագիր ներկայացրեց, որի մէջ
նա քննելով առեւտրական հարցերը, խնդրում էր Մոսկուայից Աստրա-
խան տանելիք ապրանքից մաքս չը վերցնել, որովհետեւ առանց այն
էլ նա մաքս պէտք է վճարէր Պարսից պետութեան։ Ռուսաց Թագաւորը
Վօլոգ-Դա եւ Կարգոպոլ քաղաքի Վօեվօդաներին գրել էր, որ նոքա
նոյն քաղաքների վաճառականներին առաջարկեն Աստրախանի եւ Պարս-
կաստանի հայ վաճառականների պէս ձեռնամուխ լինեն մետաքսի առեւ-
տրին. սակայն այն տեղերի վաճառականները բացէ ի բաց հրաժարուե-
ցան առարկելով որ նախ անտեղեակ են եւ երկրորդ էլ անսովոր։ Այս
մերժումն ունեցաւ իր փառաւոր հետեւանքը. Ռուսաց արքունիքն ըղ-
ջաց, որ հայ վաճառականները շատ աւելի պիտանի են, ուստի եւ
երբ Հախնազարեանի ու Մկրտչեանի յարուցած մաքսախնդիրը մէջ ըն-
կաւ, Թագաւորը հրամայեց ազատել հայ առեւտրականներին այդ մաք-
սից։

Բացի սրանցից, հետզհետէ գնացին Մոսկուա՝ Յակոբ Նաւասարեանը,

## ԳԼՈՒԽ Է.

Ինչպէս էլ ընդարձակուէր առեւտրական գործը, այնուամենայնիւ Հայոց Ընկերութեան համար քիչ էր եւ առեւտրական շրջանն էլ շատ նեղ։ Նրանք գիտէին, որ իրենց հայրենակից Հին Ջուղայեցի, Հին Նախիջեւանցի եւ Երեւանցի վաճառականները համարեա՛ ոչ մի յարաբերութիւն չունէին Ռուսաստանի հետ, այլ նրանք աւելի կապուած էին Ամստերդամ, Ճենովա, Մարսէյլ եւ այլ քաղաքների հետ։

Նշանաւոր դեր են խաղացել հայ վաճառականները Եւրոպայում հայոց տպագրութեան գործում. Նշանաւոր են մանաւանդ, որովհետեւ ԺԷ–րդ դարում հայ վաճառականը զգում էր գրքի կարիքը, նա չէր խնայում իր լուման եւ իր ծախսով գրքեր էր հրատարակում։ Վերցրէք մեր անցեալ տպագրութեան շրջանի վերաբերեալ գրքերի յիշատակարանները եւ կը համոզուէք, որ գործի գլուխ են կանգնած մի տպագրիչ եւ մի վաճառական։ Բայց որպիսի զոհողութիւննե՛ր, զրկանքնե՛ր, այնուամենայնիւ գործի սէրը չի մեռել նրանց մէջ եւ համարեա՛ մինչեւ անցեալ դարու կէսերը մնացել էր այդ գեղեցիկ սովորութիւնը, եւ վերջերս այդպիսի մեկենասներ երեւում են միայն Վիեննայից տպուած գրքերի վրայ, (մենք չենք հաշւում այլ տեղերում տպուած գրքերը, որոնցից գուցէ մի քանիսն էլ բաղդ ունեցել մեկենասներ ունենալու), եւ կարծեմ նրանց մի տեսակ մենաշնորհ է տուած։ Ամստերդամում այդ ժամանակներ առեւտուր էր անում Ոսկան վարդապետի եղբայր Աւետիս վաճառականը, որ մի քանի անգամ Եւրոպա է գնացած եղել, Պետրոս Ապրօն (որի մասին առանձին կը խօսենք) եւ այլք։

Հայ Ընկերութիւնն ու միւս վաճառականները համոզուած լինելով, որ իրենց համար մեծ օգուտ է Եւրոպայի հետ կապուած լինելը, դեռ 1673 թ. հարց զարթեցրին Մոսկուան կեդրոն դարձնել եւ այդ կեդրոնից անցնել նաեւ ռուսական այլ քաղաքները, որոնք սահմաններին մօտ էին եւ մանաւանդ որ Ռուսաց պետութիւնն արդէն ինքը մատնացոյց

էր արել քանի մը քաղաքներ, ինչպէս Արխանգել, Նովգորոդ եւ Սմօլենսկ, եւ որովհետեւ մետաքսի գինն որոշուած էր տարածութեան-քաղաքի հեռաւորութեան համաձայն, ուստի եւ փորձեցին անցնել Ռուսաստանից դուրս Շվեդիա Նարվայի միջով։ 1673 փետրուար 7-ին ներկայացրին մի խնդրագիր յանուն Դեսպանական Ատենի, եւ խնդրեցին թոյլտուութիւն, որ եւ չուտով տրուեցաւ։ Այս թոյլտուութեան մասին չուտով յայտարարուեցաւ Հայ Ընկերութեան եւ 1676 թ. արդէն Սաղում Գրիգորեանն իր գործակատարներով անցաւ Արխանգել։ Սաղում Գրիգորեանի օրինակին հետեւեցին նաեւ Յովհաննէս Մակարեան, Զաքարիա Կիրակոսեան եւ Հայրապետ Մաթէոսեան վաճառականները, որոնք մայիսի վերջերին արդէն Արխանգելումն էին։ Յունիս 12-ին Սարգիս Նազարեան եւ Յակոբ Աւետիքեան վաճառականները դարձեալ մեծ ապրանքով Արխանգել գնացին։ Այս երթեւեկութիւնն օրէ ցօր կանոնաւոր ընթացք առաւ եւ որովհետեւ Արխանգելում տօնավաճառ էր լինում, ուստի կարիք զգացուեցաւ մի մշտական մարդ ունենալու, որը կարողանար նրանց առեւտուրն առաջ տանելու, ուստի եւ մի նըշանաւոր առեւտրականի հետ, որի անունը Լուգին էր, պայմանաւորուեցան եւ գործակալ նշանակեցին եւ Ռուսաց արքունիքին էլ դիմեցին հաստատելու Լուգինին։ 1676 թ. յուլիսի 13-ին Դեսպանական Ատեանն հաստատեց Լուգինին իր պաշտօնում եւ հայ վաճառականներն էլ պայմանաւորուեցան նրա հետ, որ նա ընդունէ նրանց ուղարկած մետաքսն ու միւս տեսակ ապրանք եւ եթէ իրենք բացակայ լինեն՝ տօնավաճառին իվաճառ հանէ։ Սրանով ուրեմն երկու պաշտօնական գործակալութիւն ունէին, բայց Աստրախանում ոչ միայն գործակալութիւններ կային, այլ եւ իրենց առեւտրական տների բաժանմունքներ էին հաստատել եւ ինչքան մենք խորն ենք թափանցում, աւելի ու աւելի համոզւում ենք, որ Պարսկահայ վաճառականները միանուագ՝ ապրանք էին բերում Աստրախան, իսկ այնտեղից մաս մաս տրամադրում Մոսկուա եւ ուրիշ տեղեր։

Զը նայած այն հանգամանքին, որ Դեսպանական Ատեանն արդէն հրամանագրել էր Աստրախանի Վոեվոդային Հայերին բախշելի մաքսային զիջողութիւնների մասին, այնու ամենայնիւ մաքսատունն ու Վոեվոդան առհասարակ աշխատում էին ճնշել վաճառականներին եւ այլ եւ այլ զրկանքներ տալիս. Մի խումբ հայ վաճառականներ, որոնցից մեզ հասել են միայն չորս մարդու ազգանունն՝ Դաւիթ Բողումեան, Յակոբ Պօղոսեան, Յակոբ Աղաթեան եւ Սիմէօն Աւգուլեան, մեծ ապրանքով Աստրախան հասան։ Վոեվոդան հրամայեց մաքս վերցնել, սակայն վաճառականներն բացէ 'ի բաց հրաժարեցան վճարելուց, ուստի եւ Վոեվոդայի հրամանով ապրանքն արքունի գանձարանին յանձնուեցաւ 'ի պահպանութիւն եւ յայտարարուեցաւ նրանց, որ մինչեւ չը վճարեն,

տարրանքն իրենց չը վերադարձուի ։ Հայերն , առանց ժամանակ կորցնելու , անմիջապէս Մոսկուա գնացին եւ 1676 թ. 6-ին յունիսի Դեսպանական Ատենին բողոք ներկայացրին եւ խնդրեցին որ արքունի գանձարանը վերցնէ հասանելի մաքսավճարը , ինչ մնացած ապրանքի գինն լիովին վճարէ իրենց ։ Թագաւորն լսելով Վոեվոդայի օրէնքին հակառակ վարմունքի մասին , նոյն ամսի 25-ին բարձրագոյն հրովարտակ տուեց յանուն Վոեվոդայի , որի մէջ պարզ կերպով որոշուած էր մաքսավճարի հարցը , եւ հայ վաճառական Յովակիմ Մակարեանի ձեռքով ուղարկուեցաւ Աստրախանի Վոեվոդային ։ Այս յաջողութիւնն աւելի ոգեւորեց վաճառականներին եւ երեք տարի շարունակ իրար ետեւից բազմաթիւ վաճառականներ եկան , այնպէս որ այս գործն այնպիսի ընթացք առաւ , որ ռուս առեւտրականների մէջ զարթեցրեց մի միտք — արդեօ՞ք մի մրցումն չէ , որ քայքայում է նրանց գործը . Թէպէտ իրողութիւնն ամէն կերպ եւ ամէն կողմից հաստատում էր , որ հայ վաճառականների երեւալու օրից առեւտուրն արագ կերպով զարգացել էր բազմակողմանի օգուտներ տալով թէ ժողովրդին եւ թէ պետութեան ։ Պետութիւնը զգում էր այս բոլորը եւ ամէն կերպ նպաստում գործին , սակայն ռուս վաճառականներն , չը նայած որ իրենց գործը բարելաւել էր , դժգոհ էին պետութիւնից եւ այս դժգոհութիւնն ծածուկ չը մնաց ։ Նրանք առում էին , որ Հայերն էլ երկրորդ Անգլիացիք են դառնում , որոնք ողողել էին ամբողջ Ռուսաստան եւ առեւտրի սանձը ձեռքին թագաւորում էին . դրան էլ չեն գոհանալով . ռուս վաճառականներն 'ի մի խմբուած մի խնդրագրով դիմեցին թագաւորին 1679 թ. յունուար 3-ին առարկելով , որ թէպէտ պետութիւնն 'աշխատում է առեւտուրը տարածել Հայերի ձեռքով , բայց այդպիսով մինչ վաճառականները վընասուում են եւ զրկանքներ կրում ։ Բարեխնամ Թագաւորը գուցէ ուրախ էր , որ իր ժողովրդի մէջ վաճառականութեան նախանձ կայ եւ առաջնութեան հարց , բայց նա չէր կարող մոռանալ եւ այն , որ Կարգոպոլ ու Վոլոգդա քաղաքի վաճառականները , որոնք նշանաւոր վաճառականներ էին , հրաժարուել են իր հօր ժամանակ մետաքսի առեւտրից , յայտնելով , որ իրենց համար վնասաւոր է այդպիսի պատասխանատու առեւտրով զբաղուիլը եւ վերջապէս Դեսպանութեան Ատեանը , որի միջոցով ներկայացուել էր ռուս առեւտրականների բողոքը , միանգամ ընդ միշտ հակառակ էր նրանց բողոքի մէջ եղած յիշատակերին եւ համաձայն թագաւորի հրամանի , բողոքն անհետեւանք մնաց ։ Թագաւորը միայն այն չէր մտածում , որ Հայերն գային եւ գնային , այլ նա ուզում էր սիրով եւ քաղցրութեամբ գրաւել նրանց , որպէս զի նոքա ընդ միշտ փոխադրուէին Ռուսաստան եւ իրեն հպատակ դառնային ։ Այդ ցանկութիւնը մասամբ կատարուած էր Աստրախանի վերաբերեալ , բայց նա ուզում էր նրանց իրեն մայրաքաղաքում կեդրոնացնել եւ հաս-

կաւոր դէպքում նա անմիջապէս հոգում էր նրանց խնդիրներն աւելի լայն չափով կատարելու։ Հայոց մէջ արդէն արծարծուել էր ազգային եկեղեցի ունենալու հարցը. Ռուսաց արքունիքը վաղուց արդէն կրօնի, լեզուի, եկեղեցու ազատութիւն էր շնորհել և գործն այնպէս փայփայելուց յետոյ ջնջել՝ ոչնչացնելն անկարելի էր և հակառակ Ալէքսէյի Միխայլովիչի ցանած սերմերին, որոնք նրա որդու Թէոդոր Ալէքսէյէվիչի ժամանակ արդէն ծիլեր էին արձակել։ Թագաւորը դեռ պատանի էր և նրա սիրելիներն՝ նրա գահ բարձրանալու (1676) օրին արդէն թագաւորում էին և Թագաւորի ընթացիկ գործերն առաջ տանում։ Սոյն այդ մարդիկ, ինչպէս և դրանցից գլխաւորը՝ Բօյարին Նարըշկինը ձգնել էին այլ մեծ արտօնութիւններ տալ Հայերին, որպէս զի պետական գանձարանն աւելի օգտուի, նոյնքան կեանքն ապահովանայ և [illegible] էլ բարձրանայ։

1679 Թուականը միայն այդ կողմից չը բախտաւորեց Հայերին, այլ մի նոր աւելի ուրախառիթ դէպք էլ տեղի ունեցաւ, որով հայ առևտրականների թշնամիներն աւելի ու աւելի կատաղեցան, բայց ի՞նչ կարող էին անել, երբ Թագաւորի հրամանը պէտք է ամէն ռուս թէ օտարազգի հպատակի համար պաշտելի սուրբ լինէր։ 1679 թ. կարծես թէ մի նոր յուսափայլ արեգակ էր և բարեխնամ Թագաւորը հրամայեց յայտարարել Աստրախանցի ու Պարսկաստանցի հայ վաճառականներին, որ Զատկին՝ ապրիլ 24-ին բոլորեքեան ի միասին գան իր մօտ Ս. Յարութիւնը շնորհաւորելու և Թագաւորի աջը համբուրելու։ Ուրախութեան չափ չը կար և Հայերը ներկայացան ողորմած Թագաւորին։ Այդ ժամանակից սկսած աջը համբուրելը սովորութիւն դարձաւ, իսկ 1686 թ. ապրիլ 8-ին Զատկին արքունիքում բոլոր Հայերը ճաշով հիւրասիրուեցան. 1688 ապրիլ 19-ին էլ ճաշի փոխանակ 110 րուբլի արծաթ դրամ տուացան։ Պէտք է նկատել, որ Հայերն աւելի ու աւելի յաջողանքի ու արտօնութեանց արժանացան Սոֆիա իշխող-խնամակալուհու օրով։

Մարսի ու ճանապարհածախսի գործն առ հասարակ դժուարութիւններ էր տեղիք տալիս, որովհետև շատ անգամ պատահում էր, որ պետական պաշտօնեաները օգտուելով Հայերի միամտութիւնից և կամ նորեկների ռուսական դրամի հաշւումը չը գիտենալուց՝ աւելի էին վերնում և այլ տեսակ զրկանքներ հասցնում։ 1679 թ. մայիսին մի խումբ վաճառականներ՝ Ալէքսանդր Բո[illegible]էքպաշեան, Յովակիմ Մակարեան, Մարտիրոս Մանուէլեան և Սարգիս Սարգսեան, Աստրախանից ապրանք տանելիս ստիպուեցան աւելի վճարելու քան պէտք է վճարէին. ուստի և Մոսկուա հասնելով բողոքեցին Դեսպանական Ատեանին և խնդրեցին աւելորդ վճարածն ետ տալ։ Դեսպանական Ատեանն բաւարարութիւն տուեց նոցա և կրկին հրամանագրեց Աստրախանի Վոեվոդային անկանոնութեան տեղիք չը տալու։

Հայերն առհասարակ օրէ ցօր նոր նոր հարցեր էին բարձրացնում, որպէս զի առեւտուրը կանոնաւորուի եւ աւելի ու աւելի լայն ծաւալ ստանայ։ 1682 թ. 29-ին մայիսի Դաւիթ Բաղրամեան հայ վաճառականը, որ վաղուց արդէն առեւտուր էր անում Աստրախանում եւ Մոսկուայում, խնդրեց պետութիւնից, որ իրեն իրաւունք տան Արխանգելսկի վրայով արտասահման անցնելու։ Արքունի Դուռն թոյլ տուեց եւ դարձեալ առանձին օրէնքներ որոշեց, որի հիման վրայ էլ բազմաթիւ վաճառականներ եկան Մոսկուա արտասահման գնալու. մենք դըրանցից մի քանիսի անունները միայն կը յիշենք, ինչպէս՝ Եղիա Ցովակիմեան, Աւետում Հայրապետեան (1), Անուշ Վարդանեան, Սափար Բարսեղեան (որի մասին յետոյ կը խօսենք), այլ ընկերներով (որոնք Նովգորոդով գնացին արտասահման 1686 նոյեմբեր 1-ին). այնուհետեւ 1687 ապրիլ 20-ին Արխանգելով արտասահման անցաւ Աղաջան Աւետիքեան, Բարսեղ Բարսեղեան, որը մի քանի անգամ արտասահման գնաց։ Բ. Բարսեղեանը 1695 թ. Եւրոպայում գնած ապրանքով Աստրախան էր եւ Մօշնեցի գիւղացիներից կողոպտուելով ու ծեծուելով բողոքեց Դեսպանութեան Ատենին եւ պահանջեց իրեն բաւարարութիւն տալ, սակայն գործին ընթացք չը տալու պատճառով 1696-ին ընդ միշտ վերադարձաւ իր հայրենիքը եւ հակառակ պայմանագրի՝ Տաճկաստանի վրայով Եւրոպա անցաւ առեւտուր անելու։ Բացի այս՝ 1687-ին արտասահման անցան Ամաջան Աբրահամեան եւ Աւգուստ (°) Աւետիքեան, իսկ 1688 թ. յունիս 2-ին էլ Հայրապետ Մատթէոսեան, Զաքար Մատթէոսեան եւ Պօղոս Յովհաննէսեանց եւ այլն։

Այսպիսով ուրիշ հեռաւոր քաղաքների հետ գործ ունէին Հայերը՝ Աստրախան, Մոսկուա, Արխանգելսկ, Սմոլենսկ, Նովգորոդ, բայց այս՝ հետագայում երեւում են Նարվա, Ղազան, Օրէնբուրգ, Կամենից, Լեմբերգ, Թէոդոսիա, Խերսոն, Ղզլար եւ այլն։

1690 յունուարին Մոսկուա հասաւ Սանփան Սափարեան Թոփչենցը 15 ընկերներով եւ բողոքեց որ ինչպէս Աստրախանում, նոյնպէս էլ ուրիշ քաղաքներում ապրանքը ձերբակալութեան է ենթարկուել եւ պահանջեց որ իր վնասները հատուցուին։ Բացի այս՝ Սանփան Սափարեանը ուրիշ հարցեր էլ բարձրացրեց։ Դեռ 1683 թ. յունվար 13-ին Հայերին իրաւունք տրուեցաւ Մոսկուայում վաճառատներ բանալու եւ

(1) Ինչպէս Աւետում Հայրապետեանը, այնպէս էլ նրա որդիք ու թոռներն անխափան առեւտուր էին անում Մոսկուայի հետ եւ վերջը նրանք մշտապէս Մոսկուայում հաստատուեցան եւ դրանցից առաջացան «Արապետով» կոչուած յայտնի Մոսկուացիները, որոնք մեծ մասամբ զինուորական ծառայութեան մտան եւ նրանցից շատերը գեներալութեան էլ հասան։

ընդ միշտ հաստատուելու, սակայն Ստեփան Սափարեանցը 1690 մայիս 6-ին ամենուրեք ազատ առեւտրի հրաման հանել տուեց եւ այն էլ, որ որտեղ էլ Հայերը ռուսական ապրանք գնեն՝ մաքս չը վճարեն։ Այս արտօնութիւնը մեծապէս նպաստեց գործին եւ այս անգամ արդէն Հայերը սկսեցին գնալ Աստրախան, Լոնդոն եւ այլ քաղաքներ։ Նոյն տարուայ ապրիլ 11-ին Ս. Սափարեանն 13 ընկերներով Նովգորոդի վրայով արտասահման գնաց։

1696 փետրուար 4 ին Տփլիսից գնացին մի խումբ վաճառականներ, ինչպէս Գրիգոր Դաւթեան, Մկրտիչ Աստուածատրեան, Նիկողայոս Թորոսեան, Շահվերդ Սարգսեան, Մարտիրոս Բարսեղեան, Յակոբ Դաւթեան, Եսայի Խաչատրեան, Բահաթուր Դաւթեան, Առաքել Պետրոսեան, Պօղոս Ստեփանեան, Աստուածատուր Յովհաննիսեան, Սինան Յովհաննիսեան, Ծառայ Սահակեան, Խաչիկ Միքայէլեան եւ այլք։

Բայց արդէն փոխուել էր ժամանակը, Ռուսաստանը զբաղուած էր խաւարը հալածելով, Ռուսաստանն ունէր մի հանճար, որը պէտք է բարեփոխէր երկիրը, զարթեցնէր քնած ժողովրդին, դա Պետրոս Մեծըն էր։

## ԳԼՈՒԽ Ը.

Ալէքսէյ Միխայլովիչը իր մահից յետոյ թողեց մի աղմկալից ժառանգութիւն։ Նա առաջին կնոջից ունեցել էր 11 զաւակ, որոնցից կենդանի մնացին Ֆեօդոր եւ Իօանն եւ աղջիկ Սոֆիան։ Հօր մահից յետոյ թագաւորեց Ֆեօդորը, որ իր մահից առաջ 1682-ին ժառանգներ հռչակեց թուլակամ Իօաննին եւ Պետրին, որը ծնուած էր Ալէքսէյի Միխայլովչի երկրորդ կնոջից 1672-ին։ Սոֆիան, որ աւելի խելօք գտնուեցաւ, հեռացրեց Պետրին կամ Պետրոսին եւ օգտուելով Իօաննի թուլութիւնից իրեն հռչակեց տիրող պետուհի։ Այս գործում մեծ օգնութիւն արեց ստրելցի կոչուած զօրքը եւ 1682 մայիս 6-ին Սոֆիան հռչակուեցաւ որպէս եղբայրների օգնական տիրող։ 1682 յունիսին կատարուեցաւ թագադրութեան հանդէսը եւ Իօանն ու Պետրոսը ճանաչուեցան օրինաւոր գահաժառանգներ, սակայն Սոֆիան նորից ապստամբեցրեց ստրելցի-ներին եւ Պետրոսն ու Իօանն ստիպուեցան Տրոյիցկօ-Սերգիեւսկիյ վանքը փախչելու։ Այսպիսի աղմուկների մէջ մեծացաւ Պետ-

րոսը, որ մանկութիւնից սկսեց զբաղուել զինուորական հարցերով եւ 1689-ին արդէն որպէս ինքնակալ՝ թագաւորութեան գահը բարձրացաւ. Աւելորդ է երկարաբանութիւն անել, միայն այսքան ասենք, որ Պետրոսն իսկական զինուորական լինելով սկսեց կարգի բերել պետական գործերը, անցաւ Գերմանիա, Հոլանդիա, Անգլիա. Հոլանդիայում նա Զաանդամ գիւղում անձամբ աշխատում էր նաւագործարանում: Վերադառնալով Ռուսաստան նա կարգի բերեց պետական գործերը, բարեկարգեց զօրքի ու զինուորականների վիճակը, հրաւիրեց արտասահմանից արհեստաւորներ, շինել տուեց նաւեր եւ յետոյ էլ աշխարհակալութեան ձեռնամուխ եղաւ, որով ընդարձակեց Ռուսիոյ սահմաններն ամէն կողմից էլ: Նա երկրի վարչական կազմակերպութիւնը հիմնովին վերափոխեց եւ ամէն գործում էլ հետեւում էր Եւրոպացիներին:

Այսպիսի մի աշխարհաշէն եւ խելօք թագաւորի աչքից չէին կարող անտեսանելի մնալ Պարսկահայ վաճառականները. եւ նա իր գահակալելու օրից սկսեց խրախուսել նրանց: Նրա օրով երթեւեկութիւնն աւելի մեծ շրջան ստացաւ: Պետրոսը, որ իր մեծագործութիւնների համար Մեծ կոչուեցաւ, 1703-ին Պետերբուրգ քաղաքի հիմը դրեց եւ հայ վաճառականներին հրաւիրեց Պետերբուրգ առեւտուր անելու: Նրա օրով հայ վաճառականութիւնը մինակ մետաքսով չէր զբաղուած, այլ այս անգամ արդէն չորս կողմից հայ վաճառականներ էին գալիս Ռուսաստան, ինչպէս Ղրիմի քաղաքներից, այնպէս էլ Լեմբերգ, Կամենից եւ այլ լեհական քաղաքներից եւ Ռուսիա էին թափում բազմատեսակ վաճառքներ:

Հայ վաճառականները զգում էին, որ Պետրոս Մեծից շատ բան կարելի է սպասել եւ ահա վճռեցին մի ուրիշ քայլ եւս անել, ինչպէս արդէն յիշեցինք. 1686 ին Մոսկուա եկաւ Բարսեղեան Սաֆար նշանաւոր վաճառականը, որ երկար ժամանակ առեւտուր էր անում: Սա 170 մարտ 11-ից իրաւունք ստացաւ Նարվայում եւ Պետերբուրգում ազատ առեւտուր անելու: Սաֆար վաղուց որոշել էր Ռուսաստանում մետաքսագործարան բանալ, ուստի եւ Թերեքի ափերին նա գիւղ էր գնել էր, զննել էր հողը եւ արդէն գտել, որ Անդրեւսկի գիւղերի մօտ՝ Թերեք գետի ափերին հողը բարեբեր է, ուստի եւ 1710 թ. մարտ 12-ին դիմեց Պետրոս Մեծին եւ թոյլտուութիւն խնդրեց այդ գիւղերի մօտ մետաքսի գործարաններ բանալու: Սա արդէն Պետրոս Մեծ աշխարհաշէն թագաւորի համար մի ուրախաոիթ եւ նրա ծրագիրներին իրագործող մի երեւոյթ էր եւ նա ոչ միայն թոյլ տուեց, այլ եւ որոշ հրամաններ տուեց: Ս Բարսեղեանը տեղափոխուեցաւ իր ընտրած երկիրը, եւ սկսեց թթի ծառեր տնկել, որպէս զի շերամի համար կերակուր պատրաստէ: Ժամանակի ընթացքում կարգի բերելով մետաքսա-արդիւնաբերական գործը

1718 մարտ 13-ին հրովարտակով իրաւունք ստացաւ գործարան բանալու ։ Չը պէտք է մոռանալ, որ Ռուսաստանում սա առաջին գործարանն էր ։ 1721 յուլիս 30-ին տուած հրովարտակով նրա գործարանների պաշտօնական գոյութիւնը ճանաչուեցաւ եւ գործուածքներն էլ մեծ քանակութեամբ արտահանուեցան Ռուսական նահանգներ եւ այդ օրից սկսուեցաւ այդ գործուածքների արտահանութիւնը, որը տարուայ ընթացքում այնպիսի լայն շրջան ունեցաւ, որ մինչեւ անգամ արտասահման էլ դուրս տարուեցաւ ։ Բ. Սաֆարեանը, որ առաջ Աստրախանումն էր բնակւում՝ բոլորովին տեղափոխուեցաւ եւ Թերեքի ափին բնակութիւն հաստատեց եւ այնտեղ էլ մեռաւ 1730 դեկտեմբերին ։ Նրա ժառանգները անշնորհք գտնուեցան եւ թէպէտ դեռ այժմ էլ գոյութիւն ունին, սակայն պապենական կալուածքներից մեծ մասը ձեռքից բաց են թողել ։

Ինչպէս տեսցինք, Պետրոս Մեծը սիրող էր վաճառականութեան եւ այդ հիման վրայ նա շարունակ նորանոր օրէնքներով ու հրովարտակներով խրախուսում էր Հայերին ։ Այստեղ մենք բաց ենք թողնում Պետրոս Մեծի յարաբերութիւնները Հայոց հետ, այսպէս ասած՝ քաղաքական յարաբերութիւնը, գիտենալով որ այդ խնդիրը մի փոքրիկ պատմութիւն չէ, այլ բազմահատոր գործի նիւթը կարող է կազմել եւ որ եթէ մենք այդ մանրամասնութեան մէջ մտնենք՝ կը շեղուենք մեր ճանապարհից ։ Պետրոսի գահ բարձրանալու օրից Մոսկուայում եւ Պետերբուրգում երեւում են հայ դեսպաններ, ատիրակներ, վերջապէս Իսրայէլ Օրին, Վեփխա Չելեպին, Բաղդասար Նազարեան, Մինաս Վարդապետ, Անտոն քահանան, Թարխան եւ այլք, որոնք Պետրոսին հրաւիրում են իրենց հայրենիքին ազատութիւն տալու ։ Պետրոսը կատարող էր եւ մասամբ էլ կատարեց ինչ որ կարողացաւ ։ Պետրոսի օրէնքները ձգողական մագնիսի զօրութիւն ունէին ։

1711 ապրիլ 13-ին կառավարող Սենատին տուած հրովարտակում ասուած էր. Պարսկական վաճառականութիւնը տարածել-բազմացնել, Հայերի հետ որքան կարելի է քաղցր վարուել եւ ինչ բանի մէջ որ կարելի է դիւրութիւններ անել, որպէս զի նրանք աւելի մեծ թւով Ռուսաստան գան ։

1711 մայիս 2-ին Սենատին տուած հրամանում վերոյիշեալ հրովարտակի վերաբերեալ ասած էր. Ա) Համաձայն 175 Թ. (1667 Թ.) հաստատուած պայմանագրի՝ վերցնել որոշուած մաքսը եւ այդ մաքսը վերցնել իսկական արժէքից. Բ) Հայերին ծախած ապրանքից մաքս չվերցնել. Գ) Ինչպէս վաճառականների, այնպէս էլ ծառաների ու ապրանքի անփոփոխութեան համար կառքեր չտալ, այլ թո՛ղ իրենք վարձեն. Դ) Աստրախանից մինչեւ Մոսկուա եւ մինչեւ սահմանաքաղաքներ տալ ուղեկից պահապաններ. Ե) Ատամանից, մարզպարից եւ այլ տեղերից մաքս չը վերցնել. Զ) Մոսկուայում եւ Արխանգելսկում սխալմամբ

Հայերից վերցրած կրկնակի մաքսը՝ 973 ր. 10 ալտինը վերադարձնել։

1712 փետրուար 20-ին Սենատին տուած հրամանի մէջ ասած էր. «ապրանքից մաքս վերցնել 175 թ. եւ 711 թ. (1667 թ. եւ 1711 թ.) հրովարտակների համաձայն, իսկ ճանապարհածախսը — Աստրախանից Մոսկուայով Արխանգելսկ 20 ալտին, եւ Արխանգելսկից էլ Աստրախան փութից 20 ալտին»։

1712 դեկտեմբեր 5-ին Սենատին տուած հրովարտակում ասուած էր. «այն ապրանքը, որը արդէն Աստրախանում հետազօտուած է ու զննուած, այլ եւս սահմանաքաղաքներում զննելու կարիք չունի, այլ պէտք է վերաքննել մի միայն Մոսկուայում, ինչպէս այդ մասին նախկին պայմանագրի մէջ գրուած է»։

---

Երբ Պետրոս Մեծը Ամստերդամում էր, այնտեղ նա ծանօթացել էր նշանաւոր հայ վաճառականների հետ, որոնց մէջ գլխաւոր դեր էին խաղում նշանաւոր Պետրոս Ապրօն եւ Յովհաննէս Դիրօզոժեանը։ Վերջինս 1720-ին հոլանդական ապրանքով Ռուսաստան եկաւ եւ նոյն տարուայ սեպտեմբերին ետ գնաց։ Այսպէս չը վարուեց Ապրօն, նա ուզեց որ Պետրոս Մեծը հրովարտակով որոշէր պայմանները։ Երբ Պետրոս Մեծը երկրորդ անգամ Հոլանդիա գնաց, այն է 1717-ին, Պետրոս Ապրօն մի առաջարկագիր-խնդրագիր ներկայացրեց կայսեր եւ խնդրեց թոյլ տալ Ռուսաստանում առեւտուր անելու։ 1717 թ. յունուար 28-ին առանձին հրովարտակ տրուեցաւ, որից մենք առաջ ենք բերում գլխաւոր մասը.

«Երբ մենք Հոլանդիայում էինք, Պետրոս Ապրօ հայն իր ամենախոնարհ յուշագրով-խնդրագրով յայտնեց մեզ, որ ինքն ու իր երկու եղբայր Աբրամ եւ Ստեփան Ապրօները, որոնք Զմիւռնիայում են ապրում՝ Հնդկաստանում, Պարսկաստանում, Տաճկաստանում եւ Եւրոպական պետութեանց մէջ մեծ առեւտուր ունեն եւ այդ առեւտուրը գլխաւորապէս կայանում է մետաքսի եւ այլ պարսկական ու արեւելեան ապրանքի մէջ, եւ մի եւ նոյն ժամանակ ամենախոնարհաբար յայտնեց մեզ որ ինքն ու իր վերոյիշեալ եղբայրներն իրենց առեւտրական արդիւնաբերութեան համար մտադիր են մեր պետութեան միջով երթեւեկել Պարսկաստան եւ այն տեղից այս երկիրներ ապրանք բերել, առեւտուր անել մեր քաղաքներում՝ Աստրախանում եւ Եարօսլաւլում, Արխանգելում, Մոսկուայում եւ մեր աթոռանիստ Պետերբուրգում։ Այսպէս ուրեմն պէտք է այն ապրանքով առեւտուր անեն եւ հարկաւոր մաքս վը-

ճարին, միայն մենք հրամայեցինք, որ այն ապրանքից, ինչ որ Նորա եւ կամ նոցա գործակատարները Պարսկաստան կը տանեն եւ կամ ինչ որ Պարսկաստանից մեր քաղաքներով եւ նաւահանգիստներով (որ ճանապարհ որ իրենք կընտրեն) այս երկիրները բերել կու զենան, ինչքան որ սովորաբար պարսկահպատակ Ջուղայեցիք մաքս են վճարում, նրա համաձայն էլ ամեն ինչից սրանցից պէտք է մաքս վերցնել. այս բանի համար նա ամենախոնարհաբար մեզնից մեր բարեհաճութիւնը խնդրեց. այս պատճառով էլ մենք մեր պետութեան ու երկրի վաճառականութիւնը ծաղկեցնելու համար ոչ միայն մեր համաձայնութիւնը յայտնել ցանկացանք, այլ եւ շնորհելով այս հրովարտակը նրան առանձնաշնորհութեանց արժանացրինք եւ հրամայում ենք մեր կառավարիչ Սենատին, նահանգապետներին, փոխ-նահանգապետներին, կոմենդանտներին (բերդապետ), լանդրատներին եւ զինուորական թէ քաղաքական ամեն պաշտօնի կառավարիչներին, քաղաքներումն էլ վերահսկողներին, վաճառապետներին եւ մաքսային պաշտօնեաներին, որ երբ վերոյիշեալ Պետրոս, Աբրամ եւ Ստեփան Ապրօներ մեր այս հրովարտակով առեւտրական գործերով իրենք եւ կամ նոցա գործակատարները ցամաքով թէ ծովով, ո՛ր ճանապարհով իրենք կը կամենան, մեր երկրով կանցնեն իրենց մարդկանց հետ միասին, ամէն տեղ առանց արգելելու ազատ ճանապարհ տալ, ոչ մի տեսակ արգելք չանել եւ չը վիրաւորել այլ ընդհակառակը պահանջած դէպքում ամեն կերպ օգնել նրանց, թէ ինչպէս նրանց մօտ եղած, այնպէս էլ նրանց գործակատարների հետ ղըրկած ապրանքից, հրամայում ենք մեր մաքսային վերատեսուչներին, վաճառապետներին եւ այլ պաշտօնեաներին ամեն ինչից էլ պարսկահըպատակ Ջուղայեցի Հայերի հետ կապած պայմանագրի համաձայն մաքս վերցնել միայն ոչ աւելի քան որոշուած է եւ մեր հպատակներից ոչ ոք չը համարձակուի նրանց վրայ որ եւ է տուրք դնել եւ կամ նրանց վիրաւորել վախենալով մեր բարկութիւնից եւ ամենախիստ պատժից եւ երբէք չը յանդգնի այդ անելու. որովհետեւ մենք՝ Մեծ Թագաւորս, մերս Արքայական Ողորմածութեամբ ինչպէս նրանց, այնպէս էլ նրանց գործակատարներին մեր կայան Ս. Պետերբուրգում եւ վերոյիշեալ քաղաքներում թոյլ ենք տալիս ազատ կերպով բնակուելու եւ պատուէր չը տուած ապրանքով առեւտուր անելու, երթեւեկել այլ քաղաքներ ու օտար պետութիւններ եւ իրենց ապրանքը տանել ծովով եւ ցամաքով միայն ամեն բանումն էլ համաձայն նոյն պարսկահպատակ Հայերի վըճարած մաքսի՝ մաքս վճարել. բացի այս՝ մենք հրամայում ենք, որ Պետրոս Ապրօյին, նրա եղբայրներին ու գործակատարներին միշտ պաշտպանէք եւ օգնէք, որպէս զի նոցա եղբայր Հայերն ու այլ ազգի առեւտրականներն այս տեսնելով՝ ցանկութիւն ունենան մեր երկրի միջով առեւտրական յարաբերութիւններ հաստատել Պարսկաստանի հետ. ի

հաստատութիւն այս բանի մեր սեպհական ստորագրութեամբ եւ պետական կնքով վաւերացնում ենք եւ հրամայում մեր այս հրովարտակը մաքսատանը մուծելով՝ առել նրանց եւ կամ նրանց գործակատարներին բառ աւագութեան եւ եթէ նրանք եւ կամ թէ գործակատարները առանց մեր այս հրովարտակի գան, այն ժամանակ էլ պէտք են. միայն թէ որպէս վկայութիւն ներկայացնեն Պետրոս Սարգսի ստորագրութեամբ եւ կնքով այս հրովարտակի պատճէնը. այդ գեղջումն էլ մի եւ նոյնը պէտք է անել, ինչ որ խոսական հրովարտակը ներկայացնելիս»:

Այս հրովարտակը տրուած է Աստրախանում:

Սարգսի մասին մեր տեղեկութիւնները շատ քիչ են. միայն այսքան գիտենք, որ Սարգիսը դեռ 1731-ին (եթէ ոչ ինքը գոնէ նրա ժառանգները) Պետերբուրգում առեւտուր էր անում: Ե՞րբ մեռաւ Սարգիսը այդ մեզ յայտնի չէ, բայց հարկաւոր է օգտուել հոլանդական գիւտերից, որպէս զի ամեն ինչ մեզ համար պարզ լինի: Կարծեմ Ս. Էջմիածնի մատենադարանում դեռ մինչեւ այժմ կայ այդ մեծ մարդու պատկերը (1):

Պետրոս Մեծը միայն այսքանով չէր կարող բաւականանալ: Դեռ 1711-ին Աստրախանի վաճառականներին խստիւ պատուիրել էր Հայերի դէմ ոչ մի նեղութիւն ու արգելք չը յարուցանելու. այս հարցի մասին նա չարունակ կրկնում էր իր հրովարտակներում: 1719 յունիսի 6-ին մի նոր հրովարտակ էլ լոյս տեսաւ, որով Աստրախանի Պաշտօնատարին յայտարարեց մի նոր առանձնաշնորհութիւն, որ այնուհետեւ Հայոց Աստրախանի Ընկերութիւններին, որոնք գոյութիւն ունէին վաղուց առաջին եւ գլխաւոր վաճառատները էլ հաստատուած էին Ջուղայում ու Աստրախանում, իրաւունք էր տալիս հաստատապէս օգտուել այն իրաւունքներով, որով պարգեւած էին այլ երկրի առեւտրականները:

Մինչ Ռուսաստանը զբաղուած էր այսպիսի երկրորդական գործերով, Պարսկաստանը անշնորհք վարիչների պատճառով հետզհետէ քայքայւում էր. երկրի խաները միմեանց դէմ զէնք բարձրացնելով, ոտնակոխ էին անում թշուառ ժողովրդին, առեւտուրը հետզհետէ ոչնչանում էր եւ այս բոլորը լրացրեց Աֆղանների արշաւանքը: Գանձասարի Եսայի կաթողիկոսը կանչում էր ռուսաց խաչակիր զօրքին ազատելու բարբարոսների ձեռքից, իսկ Ռուսաստանի Հայոց նուիրակ եւ առաջնորդ Մինաս վարդապետը 1719 թ. ապրիլ 5-ին յայտնեց Պետրոս Մեծին. «Այն գաղտնի հարցը արդէն ժամանակ է գործնականի վերածելու, որովհետեւ այժմ բարբարոսները ամեն կողմից եւ 'ի ներքուստ թշուառ կացութեան մէջն են» (Պետր. Մեծ. յարաբ. ՇԱ.): Ո՞րն էր այդ գաղտնիքը. կարծեմ պարզ

(1) Էջմիածին մենք մեր ծանօթներից մէկին այս մասին նամակ գրեցինք, բայց դեռ քիչ ժամանակ անցած լինելով, — ընդ ամենը մի ամսի — պատասխան չունինք...

է. Մինաս Վ. վաղուց արդէն տեղեկութիւններ էր հաւաքում Պարսկաստանի վերաբերեալ եւ խթանի պէս խթում էր սրա ու նրա կողքը եւ կայսրին էլ ներկայացրել գրաւոր տեղեկութիւններ, որ Հայերը սպասում են անհամբեր։ Այսպիսի հանգամանքներում, երբ Պարսկաստանը ներսից արդէն քանդւում էր, տարակոյս չկայ, որ հայ վաճառականներին քիչ վնասներ չէին հասնիլ եւ Ռուսաստանում հայ առեւտրականների գալուստը զգալի եղաւ։ Ուրեմն մնում էր հարկաւոր միջոցները ձեռք առնել եւ այդպէս էլ եղաւ։ Պարսկաստանի ռուսաց դեսպան Վոլինսկին մի զեկուցագրով յայտնեց ռուսաց արքունիքին, որ Լեզգիների իշխող Դաւուդ բէկը Ղազիկումի Սուրխայ իշխողի հետ յարձակուել են Շամախու վրայ, քաղաքը կողոպտել են եւ ծեծելով ռուսաց վաճառականներին, կողոպտել են նրանց խանութներն ու խլել 500 հազար րուբլու ապրանք։ Այս դէպքը տեղի էր ունեցել 1721 թ. օգոստոսին երբ Պետրոս Մեծն արդէն Շվեդացոց հետ պատերազմը վերջացնելով Նիշտատում խաղաղութեան դաշն պիտի կապէր, ուստի եւ Կայսրը հրամայեց պատրաստութիւններ տեսնել, որի համար եւ Վոլինսկուն էլ յայտնեց։ Պետրոս Մեծը շուտով առաջ շարժուեցաւ զօրքով եւ Կասպից ծովով էլ նաւատորմիղ ուղարկեց։ Արդէն բնական է, որ Պարսիկները պիտի յաղթուէին եւ պատերազմի վախճանն այն եղաւ, որ 1723 սեպտեմբեր 12-ին Պետերբուրգում դաշն կապուեցաւ, որով Ռուսաստանին անցան Դերբենդ եւ Բաքուն, եւ Աստրաբադի, Գիլանի ու Մազանդարանի գաւառները։

Պատերազմը ինչքան էլ քաղաքական նպատակ ունէր, այնու ամենայնիւ նա համարեա առեւտրի ծաղկեցնելու համար էր։ Կայսրը ցաւում էր, որ պատերազմի պատճառով առեւտուրը դադար էր առել, ուստի հարկաւոր էր նոր կոչ ուղարկել Հայերին, որոնք առանց այն էլ մի շարք խնդրագրեր ու նամակներ էին գրել եւ 1723 յունիսի 3-ին Արտաքին գործոց պաշտօնարանում ստորագրեց այս հրովարտակը, որ այդ նպատակով պատրաստել էր տուել.

«Պարսից երկրում բնակուող պատուական Հայոց ժողովրդին մեր կայսերական ողորմութիւն եւ շնորհաւորութիւն։ Ձեզ յայտնի է, որ վաղ ժամանակից հետէ մեր կայսրութեան եւ Պարսից պետութեան միջեւ միշտ բարի յարաբերութիւն գոյութիւն ունէր եւ երկու կողմի օգտի համար էլ ազատ առեւտուր էր կատարւում, որը Պարսից երկրում եղած խառնակութիւնների պատճառով ընդհատուեցաւ։ Այն ժամանակ մեր վաճառականներին, որոնք Շամախումն էին, նրանք կողոպտեցին եւ սպանեցին, ուստի եւ մենք ստիպուած եղանք այդ երկրում մեր զէնքը գործ դնելու։ Աստուծոյ օգնութեամբ այնպէս պատահեց, որ Կասպից ծովի ափերին եղած այն քաղաքները, որոնց միջոցով առեւտուր էր կատարւում մեզ հետ՝ մեր հովանաւորութեան տակը մտան.» եւ որով-

հետեւ մեծ մասամբ վաճառականութիւնը ձեր ձեռքին էր, ուստի եւ ինչպէս Պարսկաստանում բնակուող, այնպէս էլ մանաւանդ մեր Պետութեան այլ եւ այլ քաղաքներում արդէն բազմացած հայ բնակիչները, որոնք առեւտրով են զբաղւում, ամենահպատակօրէն խնդրեցին մեզ, որ Պարսկաստանում եղած Հայերից հետ այն առեւտուրը վերականգնուի եւ նորոգուի։ Եւ մենք, առ այն ժողովուրդ ունեցած մեր կայսերական ողորմութեամբ սրանով յայտարարում ենք որ մեր հովանաւորութեան ներքոյ եղած քաղաքների հետ ունեցած առեւտուրը (ցանկալի է որ) նորոգուի եւ առանց որ եւ է վտանգի դործնաւ յաճախեն ինչպէս Կասպից ծովի ափերին եղած քաղաքները, այնպէս էլ մեր Պետութեան խորքերը, եւ եթէ կը ցանկանան, թող այն քաղաքներում եւ գաւառներում, որտեղ որ առաջ բնակւում էին, ազատ բնակութիւն հաստատեն եւ ազատ՝ առանց արգելքի առեւտուր անեն. մենք էլ խոստանում ենք, որ նրանց առեւտուրը ոչ միայն կը պաշտպանենք եւ բոլոր հարկաւոր գործերի համար էլ կը հրամայենք հոգ տանել, այլ եւ ամենաողորմածօրէն նորանոր առանձնաշնորհութիւններ կը տանք, որպէս զի աւելի շատ շահ եւ օգուտ ունենան։ Եւ որպէս զի հայ ժողովուրդը աւելի եւս համոզուի եւ հաւատայ, մենք՝ ազնւոյս Հայերի խնդրի համաձայն, բարւոք համարեցինք նրանցից մէկին՝ Յովհաննէս Կարապետին ուղարկել ձեզ մօտ մեր այս բացարձակ հրովարտակով եւ նրան յայտնելով մեր ամենաողորմած կամքն ու բոլոր հայ ժողովրդի խնդիրների համար եղած որոշումները՝ կամենում ենք որ դուք էլ նրան բոլորովին հաւատաք, ի հաստատութիւն որոյ մեր այս բացարձակ հրովարտակը տրուած է մեր արքունի կնքով»։ (Արձան. Ա. 161-162. Պետր. Մեծի յարաբ. 352)։ (1)

1723 յունիսի 6-ին Յովհաննէս Կարապետը ստացաւ 100 ոսկեդրամ եւ ճանապարհ ընկաւ դէպի Պարսկաստան. իր հետը տանելով (բացի

(1) Այս հրովարտակը ուղարկուել է հայերէն թարգմանութեան հետ, եւ թարգմանողներն եւ Ղուկաս Եղիազարը (Լուկա Իլին), Փիրի Մոմնայդամեանն եւ Յովհաննէս Կարապետը. Թարգմանութիւնը խառն է և անըմբռնելի, ահա որպէս նմոյշ. «Պատուական Հայոց Ազգին, որն որ Պարսից երկրումն էք բնակւում, մեր իմփրայերօրութեան ողորմութեամբն շատ բարև ունեմք։ Ձեզ հաւանիոյ որ վաղուց ժամանակաց մեր և Պարսից թագաւորութեան միջումն ամենայն ժամ էվ սիրով գիրանք գրել և հոմօրձակ ավդագարութիւն ուլիլել. երկու կողմանց ուստուցթիւն ելէլ նորայ. Պարսից երկիրն խառնվէց եւ կորվէց և էն ժամանակումն մեր սովդագարերն որ շամախի են, շատ մեծ նեղութիւն և մեծ զարարութիւն ան ավէլ. և սպանութիւն ան արել. էդ շաթղան մեզ պարտ է զարաց որ դաչէտ երկիրն մեր սրի զօրութիւնն բանացանէք. Աստուծոյ ողորմութեամբն և աղօթութեամբն էազէս արարինք, որ ինչ քաղաք որ դէլանայ ծովափուն է, որ էն քաղաքովն վէրոյ սովդայգարերն ամենայն ժամ մեր երկիրներին գոլման բէգայ. մեր հրամանին տակումնայ և մեր ձեռնումնայ..» (Պետրոս 353)։

այս հրովարտակից) մի նամակ յանուն «Պարսից երկրի կացող՝ եւ բնակեալ Հայոց Ասկերի եւ յիշխանաց, որ է գլուխ եւ անմարմնոր Ներսէս կաթողիկոսին, եւ մինն Եսայի, որ է Պարարթու երկրէն. եւ երկրորդըն Սարգիս Զարաբերդու (Ջրաբերդ) եւ Շիրվան, Գրիգոր եւ Սարուխան Ավան ուզբաշոց, եւ այլ ուզբաշիք, Շիրվան եւ Սարուխան եւ Գրիգորին, որ է Խաչէնու երկրէն»։ Այս նամակը մենք բաց ենք թողնում, որովհետեւ բովանդակութիւնն ամբողջովին քաղաքական նշանակութիւն ունի։ Այսքան էլ ասենք, որ Յ. Կարապետը իբրեւ քաղաքական գաղտնի գեսպան եւ լրտես մեծ դեր խաղաց եւ Ռուսաց արքունիքին յայտնեց երկրի դրութեան մասին մանրամասնութիւնները։

Կնքելով այստեղ Պետրոս Մեծի հայ վաճառականութեան ծաղկեցման համար եղած արտօնութիւնների ու հոգսերի պատմութիւնը, մենք չմոռանանք այն էլ յիշել, որ նրա օրով Պարսկաստանից միայն մետաքսը չէր որ մտնում էր Ռուսաստան. այլ եւ թանկագին ակներ, Բուխարայի մորթին, կարպետներ. բուն Աստրախանի Հայերը սկսեցին ձկնեղէնի առեւտրով զբաղուել, այլ եւ այլ տեսակ ձկնասօսինձներ էին արտահանում եւայլն։ Սենատի հրամաններից մէկի մէջ, որ տրուած է 1724 օգոստոսի 28-ին, յիշուած է որ հայկական ձկնկիթն ու այլ եւ այլ սոսինձները լաւ տեսակի չեն, ուստի եւ հրամայուած է պատրաստական ձկնկիթը վաճառել։

1725 յունվարի 28-ին կնքեց իր մահկանացուն Պետրոս Մեծը։

---

## ԳԼՈՒԽ Թ.

Մեռաւ Պետրոս Մեծը, սակայն նրա ձեռնարկները կենդանի մնացին եւ մեզ է ասել, որ նրա յաջորդները նրան պաշտպանեցին։ Դէպի Հայերն եղած սէրը մնաց նոյն չափի մէջ եւ հետզհետէ աւելի աւելացաւ, մինչեւ որ յետոյ բոլորովին թուլացաւ։ Դեռ նոր էր ննջել վերածնութեան հոգին, երբ Տաճկահայերն էլ ցանկութիւն յայտնեցին Ռուսաստանում առեւտուր անելու։ Սա շատ բնական երեւոյթ էր։ Պարսկաստանի հայ վաճառականները առաջին քարաւաններ էին ղրկում Հալէպ, Դամասկոս, Բաղդատ, Տարօն, Զմիւռնիա, Տրապիզոն, Էրզրում, Վան եւ Տաճկաստանի այլ հայաքաղաքներ։ Այս դէպքում՝ ի հարկէ ծածուկ չէր կարող մնալ Պարսկահայոց Ռուսաստանի հետ ունեցած յարաբերութիւնը։

Ճիշտ է մենք մինչեւ այժմ շարունակ խօսեցինք Պարսկահայոց վաճառականութեան վրայ, սակայն այդ դեռ չի նշանակում, որ առեւտուրը մի միայն նրանց ձեռքին էր։ Այո՛, նրանց ձեռքին էր Ռուսաստանի առեւտուրը, բայց Եւրոպա՞ն՝ 'ի հարկէ մեծ մասամբ Տաճկահայոց՝ Ո՞վ էր Ասիան, 'ի հարկէ տաճկահայ, բայց մի՞թէ միայն Ասիան էր. ո՛չ պատասխանում է Յակոբ Շահան Ջրպետը (1). «Վերջին ժամանակներում, այն է 1687 թ., Հայերը թոյլտուութիւն խնդրեցին Ֆրանսիայում Հնդկական ընկերութիւն հաստատելու. Բօրդօյում եւ Մարսէյլումն էլ դրասենեակներ բանալու, սակայն թէպէտեւ Լուդովիկոս ԺԴ-րդը հովանաւորականութեան առաջարկութեան համաձայն մերժեց, այնու ամենայնիւ իր Զմիւռնիոյ հիւպատոսին մասնաւոր կերպով հրամայեց Հայերին առանձին հովանաւորութիւն ցոյց տալ»։

Այս գործը սկզբի էր ունեցել մի եւ նոյն ժամանակներում, ինչ ժամանակ որ Ռուսաստանում առեւտուրը նոր էր սկզբնաւորուել։ Տաճկահայերը մէկ մէկ դալիս էին Ռուսաստան առեւտուր անելու եւ այս էլ երեւում է գեներալ Լէյտենանտ Մատիւշկինի 1725 դեկտեմբեր 15-ին ներկայացրած յայտարարութիւնից, որով նա արքունիքից խնդրում է առաջուայ սովորութեան համաձայն թոյլ տալ, որ Տաճկաստանի հպատակ Հայերի բերած արծաթը ընդունին։ Գեներալ-Լէյտ. Մատիւշկինը դեռ նոր էր միջնորդութիւն արել երբ 1726 յունուար 12-ին Հալէպի եւ Դամասկոսի Հայերը մի խնդիր ներկայացրին, որի մէջ խնդրում էին, որ իրենց թոյլ տրուի, Աստրախանի վրայով Ազովեան երկիրներն հետ առեւտուր անել, բերել տաճկական ապրանքներ, որի համար նրանք խնդրում էին, որ իրենցից էլ այն չափով մաքս վերցնեն, որքան որ վերցնում են Զուղայեցիներից։ Բնական է, որ Ռուսաստանը չէր մերժել, եւ այդպէս էլ եղաւ եւ թոյլատրուեցաւ։ Այս ժամանակից սկսած Հայերն սկսեցին առեւտուր անել Բէֆէ եւ այլ Տաւրիկեան քաղաքների

(1) Յ. Շ. Ջրպետը Եդեսիացի էր, ծն. 1772 թ. փարիզ անցաւ եւ այնտեղ մի քանի տարուց յետոյ Արեւելեան լեզուաց Կեդրոնի. ուսուցչապետ նշանակուելով սկսեց Հայերէն լեզուն դասախօսել։ Ներսէս Աշտարակեցին Տփխսում դպրոց բանալով նրան Տփխիս հրաւիրեց ուսուցչի պաշտօնով։ Պօլօժենիա խմբագրող յանձնաժողովի մէջ Ջրպետը մեծ դեր է խաղացել։ Մեռաւ 1833 օգոստոս 16-ին։ 1806-ին նա փարիզում հետեւեալ վերնագրով աշխատութիւն տպեց. Recherches sur l'histoire ancienne de l'Asie (Ասիոյ հին պատմութեան վրայ հետազօտութիւններ)։ Այս գրքի ռուսերէն թարգմանութիւնը, որ կատարել է Աղէքսանդր Խուդաբաշեանը, 1816-ին լոյս տեսաւ Պետերբուրգում։ Գիրքը գիտնական արժէքից զուրկ մի քաղուածական համառօտ պատմութիւն է եւ վերաբերում է հայոց պատմութեան։ Այս գրքի ռուսերէն թարգմանութեան էջ 375-376 ում է գրուած վերեւ մէջ բերած մասը։

Սենատը մի հրամանով զրկեց Աստրախան, որով պատուիրում էր, բոլոր հայ առեւտրականներին, որոնք բնակւում են Աստրախանում, մուծել տեղական առեւտրականութեան ցուցակները եւ առեւտրական մի քանի հարցերի համար էլ ենթարկել տեղի այն վաճառականերին։ Սա էլ մի տեսակ արտօնութիւն էր, որով պետութիւնը նրանց ուզում էր իր հպատակների հետ հաւասար համարել։

Այս մի եւ նոյն ժամանակ Պետերբուրգում մեծ դեր էր խաղում Ջուղայեցի հայ վաճառական Ղուկաս Շիրուանեանը։ Շիրուանեանը մի քանի տարի առաջ եկել էր Պարսկաստանից, չնորհիւ պատահական աւազակների՝ մեծ վնասներ էր կրել, որովհետեւ Պետրոս Մեծի ժամանակ որոշւած ընթացակից պահապանները (կօնվօյ) այլ եւս գոյութիւն չունէին։ Ղուկաս Շիրուանեանը մեծ ծրագիրներ ունէր, ուստի եւ նախ եւ առաջ ապահովութիւն էր պահանջում եւ գինեց պետութեան, որ առեւտրականներին ուղեկցելու համար քանի մարդուց բաղկացած պահապան խումբ տան։ 1732 յունիսի 8-ին Սենատը՝ Աննա Իվանովնայ կայսրուհու կամքի համաձայն կարգադրեց յարգել յիշեալ Շիրուանեանի խնդիրը։ Այս Ղ. Շ. 1740 ին յունուար 8 ին իրաւունք ստացաւ Վարփլեւսկի կղզիների վրայ, որտեղ ինքն էր բնակւում, եկեղեցի հիմնելու։ 1740-ին սեպտեմբեր 17-ին Ղ. Շ. իր ընկերների հետ (յիշւած են եղբ. Մակարեանները, որոնցից Բարսեղ Մակարեանը բնակութիւն էր հաստատել Մոսկուայում, ժամանակին մեծ դեր էր խաղում եւ 1747 յուլիսի 24-ին ռուսահպատակութիւն ընդունեց, որի համար եւ առանձին արտօնութիւններ ստացաւ. յիշւած է եւ Աստրախանի բնակիչ Աստուածատրեանը *) հետեւեալ բովանդակութեամբ խնդիր ներկայացրեց. «Անցեալ 1710 թ. մեր պապ հայազգի Սափար Բարսեղեանը իրաւունք ստացաւ, որ Թերեք գետի ափերին եւ Կազանների գիւղաքաղաքներում գործարաններ բանայ, եւ սրա համար էլ որոշւած էր տեղ եւ տրւած էին նրան կարեւոր թուղթ մարդիկ . . . եւ այլ առանձնաշնորհութիւններ, որի համար էլ Կազանի Վոեվոդա Ապրաքսինին հրովարտակ էր տւած. իսկ 1718 թ. մեր պապին տրւած բարձրագոյն հրովարտակ մետաքսէ գործարաններ բանալու համար . . . եւ այլն.» խնդրում էին «Տալ տեղ Աստրախանում եւ Ղզլար բերդի մօտ, որպէս զի շերամատան բանան, բրինձ ու բամբակ ցանեն եւ մի քանի տարի առանց մաքս վճարելու արդիւնաբերեն. բացի այս Աստրախանումն էլ թոյլ տալ բանալու մետաքսի եւ բամբակի գործարաններ, թէ արտասահմանից եւ թէ Պարսկաստանից էլ բերել մետաքս եւ գործիքներ այդ գործարանների համար, առանց մաքս վճարելու . . .»

Այս խնդրի պատասխանը տրւեցաւ 1741 յունիսի 15-ին շնորհած բարձրագոյն արտօնագրով յանուն Ղուկաս Շիրուանեանի եւ Ընկ., որով պատուիրւում էր Աստրախանում եւ Ղզլարում զբաղւել շերամա-

որ այդ մեքենաներից մաքս չը վերցնեն։ Սենատը ապրիլ 2-ին յայտնեց մաքսատներին, որ այնուհետեւ գործարանների համար բերած մեքենաներից մաքս չը վերցնեն։

Այնուհետեւ առեւտուրի շրջանն աւելի լայնանում է եւ 60-ական թուականներից պետութիւնն արդէն ինքն էլ նոյնպէս նպաստում է առեւտրին։ 1763-ին Սափարեանի թոռներից թէ որդիներից մէկը իրաւունք ստացաւ Աստրախանի նահանգում այգիներ անկելու եւ մի եւ նոյն ժամանակ պետութիւնը պարտք տուեց 10 հազար րուբլի, 10 տարի ժամանակով, առանց տոկոսի։ Սափարեանին այդ նպատակի համար թոյլ էր տրուած գիւղեր գնելու, միայն այդ գիւղերի մեծութիւնն էլ որոշուած էր, որ գնուած գիւղը պէտք է միմիայն 300 տղամարդ ունենար եւ ոչ աւելի։ Այս տեղ մենք կարծում ենք, որ գիւղացիները պէտք է իբրեւ ճորտ լինէին։

1767-ին Ղզլարցի հայ Աղաջանը իր ընկերների հետ խնդրեց թոյլտուութիւն վաճառելու համար տակառներով չիխիր (1) կոչուած գինի տանելու Աստրախան եւ սեպտեմբեր 10-ին իրաւունք ստացաւ։

1768 յունիս 30-ին տուած բարձրագոյն հրովարտակով հայ ժողովրդին նորանոր իրաւունքներ էին տրուած եւ մի տեսակ հրաւէր Ռուսաստանում ընդ միշտ բնակուելու համար։ Այս նպատակին հասնելու համար առեւտրի ազատութիւն էր տրւում։

1771 թ. Ղալմուխները մեծ վնաս հասցրին Աստրախանցի Հայերին եւ Սենատին հրամայուեցաւ 1779 մարտ 11-ին, որ Աստրախանում փոխատուական դրամատուն հիմնեն, որպէս զի առեւտուրը վերականգնանայ, որը 1771-ից արդէն դադարել էր եւ չափից դուրս ընկել։

1779 նոյեմբերի 14-ին շնորհեցաւ բարձրագոյն հրովարտակ յանուն Ղրիմեցի Հայերի, որոնք հիմնեցին Նոր-Նախիջեւանը։ Նոր Նախիջեւանից յետոյ հիմնուեցաւ եւ Գրիգորիո-Պօլիսը եւ այլն, որոնք նոյնպէս մեծ զարկ տուին վաճառականութեան։

1783 թ. մարտ 30 ին իշխ. Պօտյօմկինին, որը գեներալ-Գուբեռնատոր էր, հրամայուեցաւ հայկական դատարաններ հիմնելու։ Մի եւ նոյն ձեւի դատարաններ հիմնուեցան նաեւ Աստրախանում։ Բացի այս, Աստրախանի հայ վաճառականների խնդրանօք 1786 մարտ 18-ին իրաւունք տրուեցաւ այսպէս կոչուած Խորհրդի դատարաններում ներկայացուցիչներ ունենալու։

Վաճառականութեան հետ զուգընթացաբար Հայերն իրենց ուշադրութիւնը կեդրոնացրին նաւային հաղորդակցութեան վրայ։ Ճիշտ է, վաղուց արդէն նրանք Կասպից ծովի վրայ նաւեր ունէին, սակայն օ-

---

(1) Նոր, դեռ չը թթուած գինի, այն որ կախէթում «մաճար» են ասում։

րինական ձեւ տալու համար հարկաւոր էր թոյլտուութիւն, մանաւանդ որ նրանց նաւերն առանց թոյլտուութեան չէին կարող ռուսական ծովափնեայ քաղաքներն այցելել։ Երբ Պետրոս Մեծը Կասպից ծովի ափերն իր պետութեան հետ միացրեց, արդէն ակներեւ կերպով մէջ բերուեցաւ եւ նաւային հաղորդակցութեան գործը։ Թէպէտ յիշատակւում են առեւտրական նաւերի մասին, որոնք Հայերինն են պատկանելիս եղել, բայց դրանք պէտք է աննշան նաւեր եղած լինեին եւ ոչ թէ Պետրոս Մեծի շինել տուած «Օրեօլը», որ այրուեցաւ Ռազինի յարձակման ժամանակ։

Առաջին կանոնաւոր նաւագնացութիւն սկսողն՝ իմ կարծիքով՝ պէտք է հայ վաճառական Աղամօնեանը լինի, որ խնդրեց ազատել իրեն ու իր ընտանիքին այլ եւ այլ տուրքերից, եւ 1758 նոյեմբեր 19-ին էլ խընդրեց թոյլ տալ որ Կասպից ծովի վրայ երկու առեւտրանաւ բանեցնէ։ 1761-ին յուլիս 25-ին կա՛մ այդ խնդիրը կրկնուեցաւ եւ կամ թէ վերջնական լուծումն ստացաւ։

1760 թ. մի հարց ծագեց։

Աստրախանում գոյութիւն ունէր Գրաֆ Վորոնցովի նաւային ընկերութիւն, որը Կասպից ծովի ձախ (*) ափերի վրայ նաւեր էր բանեցնում։ Գրաֆ Վորոնցովը մի բողոք ներկայացրեց Սենատին Աստրախանի նահանգական գրասենեակի վրայ (Канцелярия), որ իւր մէջ յիշեալ գրասենեակն միջամտում էր 1759 թ. յուլիսին արձակած մի կարգադրութեան համար, եւ այդ կարգադրութիւնն էլ հետեւեալն էր. Դիւանը թոյլ էր տուել Աստրախանի Ծովային Նաւագնացական Ընկերութեան եւ հայ վաճառականներից՝ էլ. Մաքսիմ Տատուչեւին (*), Յովհաննէս Բունիաթեանին, Թէվազ Ձալեանին (Ձալինեւին) եւ ընկերներին որ Աստրախանից նաւեր ուղարկեն Մազիչլախ եւ ձախ ափի վրայ եղած միւս ծովափնեայ քաղաքները։ Նրանք էլ 5 առեւտրանաւ էին ուղարկել զանազան տեսակ ապրանքով։ Նոյն տարւայ մարտ 30-ին Սենատը բացատրեց, որ ձախ ափը Գր. Վորոնցովի ընկերութեանն է տուած եւ իր բացատրութեան 19-րդ յօդուածում ասուած էր. «Յիշեալ դիւանին հրամաննագրել, որ Կասպից ծովի ձախ կողմի վրայ ոչ ոքին չը թոյլ տան առեւտուր անելու»։

Մեզ յայտնի հայ նաւատէրերից մէկն էլ Աստրախանի բնակիչ Գրիգոր Կամպանովն է։ Սա Մոսկուայում եւ Ֆրանով գիւղում մետաքսի գործարաններ բացեց եւ վերջը խնդրեց պետութիւնից թոյլտուութիւն Կասպից ծովի վրայ առեւտրանաւեր բանացնելու։ 1769 նոյեմբեր 17-ին Սենատն առհասարակ Աստրախանցի հայերին յայտարարեց նաւային ընկերութիւններ հիմնելու եւ նաւերի թիւը շատացնելու։

Այժմ անցնենք մեր գործի վերջաբանին։

Մենք հայ վաճառականական ցուցակը կնքում ենք Պօղոս կայսեր հրովարտակով ։

Պօղոս կայսեր օրով Աստրախանցիք մեծ առեւտուր ունէին. մանաւանդ որ Եկատերինէ Բ. կայսրուհին բոլորովին փոխել էր Հայերի վիճակը. մի շարք արտօնութիւններ էր տուել. նոյն էր արել եւ Պօղոս կայսրը։ Կայսրը պահանջեց իրեն մի տեղեկագիր ներկայացնել եւ մանրամասնօրէն ցոյց տալ թէ ինչ հիմունքների վրայ է գրուած Հայերի ձեռքին եղած առեւտուրը։ Կայսեր ներկայացուեցաւ 12 կէտերից բաղկացած մի տեղեկագիր. իսկ մինչեւ այդ տեղեկագիրը կայսրը մի հրովարտակ շնորհեց կառավարիչ Սենատին, որը նոյնութեամբ թարգմանում ենք այստեղ։

(Զկնի կայսերական ընդարձակ տիտղոսի.)

«Զիջանելով Աստրախանում առեւտուր անող հայ հասարակութեան խնդրին, որոնք գրուած են 'ի թիւս ռուսական վաճառականների. Ամենաողորմածաբար հրամայում ենք վերադարձնել նրանց այն իրաւունքները, որ շնորհել են մեր նախորդները այդ հասարակութեան, եւ այդ հիման վրայ նրանց եւ իրենց միւս հայրենակիցների համար բարձրագոյնս հրամայում ենք. առաջին՝ թոյլ տալ նրանց, համաձայն առեւտրական օրինաց մաքս վճարելով՝ միւս օտարերկրացիների նման առեւտուր անել. Երկրորդ՝ ընդունել նրանց որպէս ժամանակաւոր հպատակ եւ ոչ մշտական։ Երրորդ՝ չըստիպել նրանց գրուելու 'ի թիւս ռուս առեւտրականների. եւ մի եւ նոյն ժամանակ այդ կողմից ազատել տուրքերից ու պարտաւորութիւններից։ Չորրորդ՝ նրանց, բացի քրէական գործերից, թողնել Աստրախանում առեւտուր անող Աղուանից ընդհանուր դատարանով։ Հինգերորդ՝ որպէս զի նրանց ընտանեկան կեանքում դժուարութիւններ չառաջանան, ազատել նրանց կոռից եւ դրա փոխարէն դրամական տուրք վերցնելով՝ այլոց վարձել այդ գործի համար»։

«Պաւէլ»

Տուած է Ս. Պետերբուրգում
1797 թ. փետրուար 20-ին.

ՎԵՐՋ